

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ՃԱՄԲԱՐ—ԴՊՐՈՑԸ

Ձեզանից ո՞վ չի եղել Ծաղկաձորում: Համարյա բոլորը եղել են:

Հիշու՞մ եք Ծաղկաձորից դեպի հարավ, Կեչառիսի եկեղեցու մոտով անտառի մեջ խորացող ճանապարհը:

Իսկ ովքեր չեն եղել Ծաղկաձորում, ես նրանց համար կպատմեմ:

Կա այդպիսի մի ճանապարհ. անցնում է ձորի միջով, Թեղենիսի խոխոջուն գետակի ափերով, տանում է անտառների գիրկը: Չգիտեմ անուն ունի՞, բայց կարելի էր անվանել Պիոներների ճանապարհ. համարյա ամեն շրջադարձի դեմդ են ելնում կարմիր վզկապակիր երեխաների երգող շարքեր, ամեն քայլափոխի կարելի է լսել պատանեկան զվարթ ու անհոգ ձայներ:

Անցնում ենք «Կառուցող» բանվորական միության պիոներական ճամբարի մոտով, որ հանգստանում են շինարարների երեխաները, քիչ էլ հեռու կաշեգործների երեխաների պիոներական ճամբարն է՝ հարմարիկ, փայտե տնակներով, ընդարձակ խաղահրապարակներով և բացօթյա ճաշարանով: Ավելի հեռվում, թվում է ճանապարհի վերջին շրջադարձի մոտ, փոքրիկ, հարթ տարածության վրա փողփողում է ավտովարորդների երեխաների «Նաիրի» ճամբարի դրոշակը: Թվում է, այստեղ՝ Ծաղկաձորից մի քանի կիլոմետր դեպի անտառների գիրկը՝ ճանապարհը պիտի վերջանա:

Բայց ճանապարհը շարունակվում է: Օձապտույտ տալով բարձրանում է դեպի վեր. չորս կողմը կանաչ, սաղարթախիտ, համարյա անանցանելի անտառն է:

Բարձրում, սարալանջը ծածկած ծառերի միջև երևում են բազմաթիվ վրանների կատարներ, և բարձր կայմի ծայրին փողփողացող դրոշը վկայում է, որ անտառների ու սարերի միջև տեղավորված է ևս մի պիոներական ճամբար: Քարից կառուցված շենքեր կամ փայտից կացարաններ չկան, այստեղ պիոներները, ապրում, պարապում, քնում են միայն վրանների տակ, և ճամբարը անտառում կորած վրանային փոքրիկ ավան է հիշեցնում:

Համարյա խուլ անտառի մեջ տեղավորված է պատանի տուրիստների ու հայտնի բժշկական կայանի Ա. Արոլյանի անվան պիոներական ճամբար — դպրոցը:

Վրանային փոքրիկ ավանում, դուք կարող եք հանդիպել Գյորգի Բարսեղյանին, կամ, ինչպես նրան անվանում են սաները՝ Գյորգի Սերգեյչին: Կհանդիպեք եթե, իհարկե, այդ պահին նա չգտնվի ճամբարից տարբեր կողմեր ձգվող տուրիստական շատ երթուղիներից որևէ մեկում:

Միջահասակ, նիհարավուն, ամուր կազմվածքով մարդ է Գյորգի Բարսեղյանը: Դեռ 1962 թվին էր՝ Ուկրաինայի պիոներների հրավերով Հայաստանի պիոներների և կոմերիտական աշխատողների քսան հոգուց բաղկացած մի խումբ հյուր եղավ Արևմտյան Ուկրաինայի «Կարպատներ» պիոներական տուրիստական ճամբարում: Այստեղ էլ նրանք առաջին անգամ հանդիպեցին Գյորգի Բարսեղյանին՝ Լվովի դպրոցներից մեկի աշխարհագրության դասատուին, եռանդուն մարդու, պիոներական տուրիզմի իսկական էնտուզիաստին և հմուտ մանկավարժին:

Եվ ահա, երկրորդ տարին է, Հայաստանի կոմերիտմիության կենտկոմի հրավերով Գյորգի Բարսեղյանն իր ամառային արձակուրդն անց է կացնում հայրենի երկրում:

Ինչի մասին էլ խոսելիս լինեք նրա հետ, խոսքը կդարձնի տուրիզմին: Ճամբարում Հայաստանի համարյա բոլոր շրջաններից հավաքված են ակտիվ դպրոցականներ: Ճամբարի ավագ հրահանգիչ Գյորգի Բարսեղյանը նրանց հաղորդում է տուրիստական անհամար եր-

ՕԳՈՍՏՈՍ
№ 8 1965 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*թուղիներում տարիներ շարունակ ձեռք բերած իր փորձն ու հմտությունը։ Նրան մտահոգում է, որ մեր ռեսպուբլիկայում պիոներական-դպրոցական տուրիզմը թույլ է զարգացած։ Մինչդեռ հայրենի գեղատեսիլ և բազմազան բնաշխարհը անսպառ հնարավորություններ է ընձեռնում։*

*Թե ձեզ համար, երեխաներ, որքան օգտակար բան է տուրիզմը դուք կհամոզվեք թեկուզ մի քանի րոպե զրուցելով նրա հետ։*

*— Թող ձեզ տուրիստական երթուղում ուղեկցեն ոչ միայն ֆիզկուլտուրայի, այլև աշխարհագրության, պատմության, բնագիտության, լեզվի և գրականության դասատուները։ Դուք անցեք հայրենի երկրամասով ոչ միայն որպես ճամփորդներ,— ասում է Բարսեղյանը,— այլև որպես նրա բնության և պատմության ջերմեռանդ հետազոտողներ, մանրազնին ուսումնասիրեցեք և ճանաչեցեք հայրենի երկրամասը։ Այդ դեպքում դուք երթից տուն կվերադառնաք ձեր դպրոցական հերբարիումի, կենդանի անկյունի, երկրաբանական հավաքածուի համար հարուստ, արժեքավոր նյութերով, այդ դեպքում դուք կկարողանաք ձեր դպրոցում ստեղծել սեփական երկրագիտական թանգարան։ Դուք կվերադառնաք ոչ միայն ավելի կազդուրված և ուժեղ, այլև գիտելիքներով ու փորձով հարուստ։*

*Լինում են օրեր, երբ ճամբարում առավոտյան տողանը կատարվում է սովորականից շատ վաղ, համարյա մութնուլուսին։ Պիոներները՝ ճամբարի սաները, շարք են կանգնում տուրիստական լրիվ հանդերձանքով։ Ճամբարի պետ ընկեր Սմբատ Սաֆարյանը և ավագ հրահանգիչը շրջում են շարքերի առջևով, ուշադիր ստուգում են սաների հանդերձանքը, հագուստը։ Երթին պետք է նախապատրաստվել ամենայն խնամքով։ Օրեր շարունակ այդ պատանիներն ու աղջիկները սովորել են, ձեռք բերել հայրենի երկրով անցնելիս իրենց սպասող անակնկալներն ու դժվարությունները հաղթահարելու հմտություն, գիտեն՝ թե վաղը ինչ եղանակ կարող է լինել, գիտեն՝ ինչպես պիտի անցնել լեռնային կատաղի գետակը, ինչպես խարույկը վառել անտառում, ճաշ կամ ընթրիք պատրաստել, գիշերել բաց երկնքի տակ։*

*Վաղորդյան օդի մեջ վերջին անգամ հնչում է շեփորը. հրաժեշտի ողջույն հղելով՝ ջոկատները բաժանվում են իրարից և շարքեր կազմած քայլում են դեպի անտառների, լեռների, դաշտերի գիրկը, դեպի թարմ օդը, պաղ ջուրը և ջերմ, կենսատու արևը։ Եվ ճամբարից դեպի տարբեր կողմեր ձգվող տուրիստական արահետներում հնչում են նրանց առույգ ու զիլ երգերը։*

*Հարցրեք ճամբարի հրահանգիչներին ու սաներին՝ երևանցի Մարկոսյան Միշային, լենինականցի Պողոսյան Գայանեին, ալավերդցի Քոչինյան Հենրիկին, Մանուկյան Թերմինեին և շատ ու շատ ուրիշների, և նրանք ձեզ, երեխաներ, ժամերով կպատմեն տուրիստական երթուղիներում անցկացրած օրերի մասին գրավիչ շատ պատմություններ։*

*Այդ պատմություններում կան և մութ անտառում վառվող խարույկի շուրջ անցկացրած խորհրդավոր գիշերներ, և վտանգավոր գետանցներ ու հոգնեցուցիչ լեռնանցներ, լեռների գագաթներից բացվող զմայլելի տեսարաններ և դժվարին երթում փոխադարձ ընկերասիրության ու անձնազոհության հուզիչ շատ դրվագներ։*

*Կանցնեն ամառային հրաշալի օրերը, կվերջանա ճամբարային կյանքը և հարյուրավոր դպրոցականներ, պիոներական տուրիզմի մեջ հմտացած ու փորձված՝ կվերադառնան իրենց հարազատ քաղաքները, գյուղերն ու ավանները. Նրանք իրենց հարազատ դպրոցներում կկազմակերպեն տուրիստական ակումբներ, և հարյուրավոր դպրոցներից դեպի հայրենի երկրի դաշտերը, լեռները, կառույցներն ու տեսարժան վայրերը կձգվեն՝ ուսապարկ, լայնեզր գլխարկ ու կողմնացույց կրող պատանի տուրիստների հարյուրավոր ջոկատներ։*

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ



# ՋԱՆ, ԻՆՉ ԼԱՎ Է ՃԱՄԲԱՐՈՒՄ



Գրում է Պիասեթը

Ձեզանից շատերը երևի եղել են Վանաձորում։ Ես երբեք չէի եղել։ Այս տարի ընկերոջս՝ Հայկի հետ ես գնացի Վանաձոր։ Ու չգիտեմ ինչու, Վանաձորում հիշեցի ինձ շատ հարազատ Ծաղկաձորը։ Հիշեցի ու համեմատեցի. Վանաձորը, իհարկե, նման չէ Ծաղկաձորին։ Վանաձորում լեռներն ավելի շատ են ու բարձր։ Վանաձորում անտառներն էլ ավելի խիտ են, և կածանները այնքան նեղ, որ մեր բակի ամենափոքր Արամիկն էլ չի կարող անցնել։

Բայց Ծաղկաձորի նման Վանաձորն էլ է լցված ճամբարականների աշխույժ աղմուկով, նրանց ուրախ կանչերով։ Ծաղկաձորի նման Վանաձորն էլ է ամենուր ժպտում կարմիր վզկապավորների շարքերին։

Բավական ուշ էր, երբ ես հասա ճամբար։ Հեռվից ճամբարի պետն ինձ նկատեց և ժպտալով մոտեցավ.

— Ա՛յ Պիասեթ, ինչ լավ է՝ եկար։ Այսօր մեզ մոտ փեստիվալ է լինելու, ինքդ էլ կմասնակցես։

Մենք մտանք ճամբար։ Առաջինը, որ գրավեց իմ ուշադրությունը, դա ճամբարի մաքրությունն էր։

Ամբողջ հրապարակը զարդարված էր գունավոր թղթերից պատրաստված լապտերիկներով և ծաղիկներով. այդ բոլորը պատրաստել էին «հմուտ ձեռքեր» խմբակի վարպետները։ Օդում ճոճվում էին պատանի տիեզերագնացների և ավիոմոդելիստների պատրաստած արբանյակներն ու ինքնաթիռները։

Ճամբարում ոչ մի պիոներ չէր երևում։ Իսկ երբ իջավ երեկոն, պիոներ-շեփորահարների ազդարարումով ճամբարի տարբեր անկյուններից դեպի հրապարակ շտապեցին հպարտ սուվորովականները, պատանի շախմատիստները, խիզախ տիեզերագնացներն ու գույնզգույն ծաղկազգեստներ հագած «Ծաղկեփունջ» ջոկատը։ Ուշացած՝ ծիծաղելով, մի քիչ էլ ամաչկոտ վազեցին փոքրերը՝ մանուշակներն ու թիթեռնիկները։

Փեստիվալը ուշ վերջացավ, և ես, ստիպված քնեցի ճամբարում։ Հաջորդ օրը առավոտյան ես ծանոթացա ստեփանավանցի Լենայի, դիլիջանցի Կարինեի և կիրովականցի Մարինեի հետ։ Երեքն էլ առաջին անգամն էին լինում ճամբարում։

— Առաջին օրերին տխուր էր, ոչ մեկին չէի ճանաչում, իսկ հիմա այնքան լավ ընկերուհիներ ունեմ։ Մենք որոշել ենք այդ բարեկամությունը շարունակել նաև դպրոցում, նամակներ կգրենք միմյանց,— պատմում էր Մարինեն։

— Իսկ ես «Բարեկամություն» ջոկատից եմ. մեր երկու ջոկատները, առաջին և երրորդ ջոկատները, ամեն ինչ միասին են կազմակերպում և նախաձեռնում։ Երկու օր առաջ մեկօրյա արշավ գնացինք դեպի Մայմեխ սարը։ Երբ հասանք գագաթին, դրոշակ կանգնեցրինք և խոշոր տառերով գրեցինք՝ «Արտեկցիներ»։

«Հայկական Արտեկում» պիոներները շատ են սիրում նաև գիշերային արշավները։ Կես գիշերին տագնապ է լինում, բոլորը արթնանում են, արագ հագնվում, վերցնում են ուսապարկերն ու ճանապարհ ընկնում, իսկ վաղ առավոտյան նրանք հանդիսավոր տողան են կատարում նշանակված բացատում կամ լեռան գագաթին։

Ռազմական խաղերը, դե, ճամբարում համարյա բոլորը գիտեն այդ հետաքրքիր խաղերի գաղտնիքները, նրանք կարող են կարդալ խաղի համար անհրաժեշտ բոլոր գաղտնագրերն ու նշագրերը։

Պատանի բնասերներն էլ իրենց օգտակար աշխատանքն են կատարել. ամբողջ ճամբարը նրանք շրջապատել են մասրենիներով, գույնզգույն մեխակներով և վարդերով։

Ես սովորելու և ընդօրինակելու ուրիշ շատ հետաքրքիր բաներ տեսա Կիրովականի «Հայկական Արտեկ» պիոներական ճամբարում։



«Հայկական Արտեկը»

# ԳԱԶԱՆԱՆՈՑ... ՃԱՄԲԱՐՈՒՄ

Զարմանում եք... Իսկ եթե հարցնեք Վանաձորի «Եղնիկ» պիոներական ճամբարի պիոներներին, նրանք ոգևորված կպատմեն.

— Այո, այո, մեր ճամբարում բնագիտական անկյունին կից ստեղծել ենք գազանանոց։ Օձերի և մողեսների կողքին թռչկոտում են աղավնիները։ Միևնույն վանդակում են ապրում ճագարները, նապաստակներն ու կրիաները։ Կապիկն իր ծամածռություններով զվարճացնում է բոլորիս։ Իսկ արջը, ճիշտ է մենակ տխրում է, բայց մեր կենդանաբաններ Սամվելն ու Վոլոդյան և ճամբարի պետ ընկ. Խանզադյանը միշտ զբաղեցնում են նրան։ Մենք շատ ենք սիրում այդ կենդանիներին։ Ինքներս մաքրում ենք վանդակները, կերակրում նրանց։ Ոչ մի ճամբարում այդպիսի գազանանոց չկա, մենք առաջինն ենք,—հպարտանում են նրանք։

Բայց պիոներներին միայն գազանանոցը չի հետաքրքրում։ Շատ լավ էր, օրինակ, ջոկատների ստուգատեսը «Առաջին անգամ» նշանաբանով։ Ստուգատեսին վաղուց էին պատրաստվել ճամբարականները։ Այդ օրը բոլորը անհամբեր էին սպասում։ Ճամբարականները շատ հավանեցին չորրորդ ջոկատի սովորած «Կարմիր կակաչներ» նոր երգը։ Այդ երգն այնքան լավն էր, որ բոլորը ճամբարում հիմա երգում են։

Ես ուշադիր լսում էի երգը, երբ ինձ մոտեցավ ճամբարի ֆուտբոլիստ Մհերն ու կիսաձայն շշնջաց.

— Չմոռանաս նաև մեր ֆուտբոլիստների մասին գրել։ Մեր ֆուտբոլիստները հրաշալի են խաղում, իսկ Համլետը մեր թիմի Հովիվյանն է, նա այնպես դիպուկ է խփում։ Գիտե՞ս, մենք հանդիպում ունեցանք Կիրովականի պատանի ֆուտբոլիստների հավաքական թիմի հետ։ Շատ հետաքրքիր ու դժվար խաղ էր, բայց մենք հաղթեցինք։

# ՍԱՐԻ ԼԱՆՋԻ ՕՐԱՑՈՒՅՑԸ...

*Արևի ճառագայթների ոսկե խուրձը լուսավորեց սարի գագաթը և տարածվեց Հանքավանի ձորով մեկ։ Մարմարիկ գետի ջրերը արծաթե փայլ ստացան։*

*Ալիկը չսպասեց շեփորի կանչին։ Նա վեր թռավ անկողնուց, արագ հագավ կոշիկները և դուրս եկավ ննջասենյակից։ Հայացքն ուղղելով դիմացի սարալանջին, նա պարզ կարդաց սպիտակ քարերով այնտեղ գրված «Հուլիսի 15-ը»։*

*Օրացույցն Ալիկին հիշեցրեց, որ ինքն արդեն 5-րդ օրն է ճամբարում։ Որքան հետաքրքիր էջեր ունի ճամբարային այս օրացույցը։ Ու մտքով «թերթելով» այն, նա հիշեց։*

*Ամբողջ դրուժինան մասնակցեց անտառում կազմակերպված «Հետախույզի հետքերով» խաղին։ Ջոկատներից մի քանիսը դարձել էին «հետախույզներ», նրանք հետախուզելով ամբողջ տեղանքը, անտառի տարբեր մասերում թողնում էին հետաքրքրաշարժ նամակներ, իսկ հետապնդողներն էլ աշխատում էին գտնել թաքցրած նամակները։*

*...Ալիկը, Արմիկն ու Արփան միասին էին գնում։ Հանկարծ Արփան դիմացի ծառի հաստ բնի վրա նկատեց կավիճով արված նշանը՝ թեքվիր աջ։ Եվ բռնելով մացառուտներից՝ նրանք մտան անտառի խորքը։ Զանցած մի քանի քայլ, ճամբարականները ծառի բնից դուրս բերեցին «հետախույզների» թողած նամակը։ Քիչ հետո նրանք արդեն հասել էին հետախույզների ընտրած վայրը։*

*Իսկ առավոտյան՝ տողանի ժամանակ դրուժինայի խորհրդի նախագահ Մարինեա Հովհաննիսյանը հայտնեց, որ «Հետախույզի հետքերով» խաղում հաղթել է 6-րդ ջոկատը և հուշադրոշ հանձնեց նրանց։*

## ՃԱՄԲԱՐԱՅԻՆ ՇԱՐԺԵՐ



Հոգատար պետ է ԿԱՐԼԵՆ ՔԱԼԱՇՅԱՆԸ



Սա ՄԱԼՎԻՆԱ ԱԲԱՋՅԱՆՆ է



Ահա և ՀԱՄԼԵՏ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ

Երեկոյան պետք է տեղի ունենար անտառային դիմակահանդես։ Ճամբարականները ծառերի տերևներից ու ծաղիկներից գեղեցիկ հագուստներ էին պատրաստել։ Նրանք սովորել էին հետաքրքիր շատ վիկտորինաներ, հանելուկներ ու շուտասելուկներ։ Իսկ երկրորդ ջոկատում պիոներ Վիլեն Ստեփանյանը վերջին անգամ փորձում էր Հովհաննես Թումանյանի «Զարի վերջը» պիեսը, որ պետք է ցուցադրեին պատանի արտիստները։

Ճաշին բոլորը մեծ ախորժակով ուտում էին համեղ կերակուրները։

— Այսօր ճամբարի ճաշը մենք ենք պատրաստել,—ոգևորված ասում էր պիոներ-խոհարար Սուսաննան։—Առաջինը՝ բորշչ, իսկ երկրորդը՝ հայկական տոլմա։

Հրճվում էր վարպետ Համբարձումը։ Կարճ ժամանակի ընթացքում ճամբարականներն արդեն գիտեին մի քանի տեսակ ճաշեր պատրաստել։ Հիմա, արշավի գնալիս, այլևս դժվար չի լինի նրանց համար տեղում համեղ կերակուրներ պատրաստելը։ Բացի խոհարարական խմբակից, ճամբարում հետաքրքիր գործեր են կատարում նաև պատանի ֆոտոսիրողները, թմբկահարներն ու պիոներ-հրահանգիչները։

Հանքավանի «Զեփյուռ» ճամբարում շնորհալիներ շատ կան։ Նրանցից շատերը, երբ վերադառնան դպրոց, իրենց իմացածը կհաղորդեն մյուսներին, հարազատ մնալով պիոներական կարևոր պայմանին՝ սովորեցիր ինքդ՝ սովորեցրու ընկերոջդ։

Ճամբարային օրը մոտենում էր ավարտին։

Առավոտյան Ալիկը նորից վաղ արթնացավ։ Նա նորից դուրս վազեց սենյակից, նայեց դիմացի սարի օրացույցին՝ «հուլիսի 20-ը»։ Այդ օրը պետք է ամփոփվեր ջոկատների կատարած աշխատանքը։ Ո՞ւմ ջոկատը կլիներ լավագույնը...

Ճամբարում պիոներները պատրաստել էին «Լենինի հյուղակը Ռազլիվում»։ Այս հյուղակում բոլորին բախտ չի վիճակվում լինել։ Այո։ Այն ջոկատը, որը բոլորից լավ է աշխատել ճամբարում, սովորել է շատ երգեր, պարեր, խաղեր, հանելուկներ ու վիկտորինաներ և կարող է կարդալ Մորզեի այբուբենը, գերազանց է հերթապահել ճաշարանում, իրավունք է նվաճում մտնել Իլյիչի հյուղակը, արժանանում այնտեղ ջոկատային որևէ միջոցառում անցկացնելու բախտին։

Երեկոյան Ալիկենց ջոկատը նստել էր Իլյիչի հյուղակում։

**ԿԱՄՈ ՄԿՐՏՉՅԱՆ**



Արարատյան դաշտում լորի որս անելիս, երբ անցնում եմ որևէ բոստանի մոտով, դեռ հեռվից առնում եմ ձմերուկի այն խելքամաղ անուշ բույրը, որ միայն ինձ է հասնում, միայն ինձ է հայտնի։ Շոգից քրտնած, շրջագայությունից հոգնած ու ծարաված, դե, իհարկե, ձմերուկը հաճելի կթվա,—այսպես կառարկի ընթերցողը։ Այդ այդպես է, իհարկե, բանի որ ոչ ոք այնքան չի ծարավում, որքան որսորդ մարդը։ Բայց ձմերուկի «պաշտամունքն» իմ մեջ հեռավոր արմատներ ունի, նա գալիս է իմ մանկությունից։ Առհասարակ երեխա ժամանակվա զգացած համերն ու հոտերն են, որ երբեք չեն մոռացվում ամբողջ կյանքի ընթացքում։ Հիմա այնպիսի տարօրինակ ուտելիքներ է սիրտս ուզում, որ քաղաքում ապրող ընտանիքիս անդամները հազիվ են զսպում իրենց տհաճությունը. ասենք՝ ձեթով տապակած ավելուկ, բացախով փիփերթ, մանավանդ ձավարով բաշտլի՝ աղի կողակը վրան։ Դրանք անմահական բաներ են ինձ համար, երևի այն պատճառով, որ սաստիկ քաղցած տավարածը (որպիսին ես էի կյանքիս առաջին շրջանում), երբ տուն էր գալիս հանդից, մայրը այդ ուտելիքներից էր դնում նրա առաջ։ Իսկ ամենահամեղ ուտելիքն աշխարհում այն է, ինչ ուտում ես խիստ քաղցած ժամանակ։

Եվ ահա մանկությունից իմ մեջ մնացած

Նայելով այս լուսանկարին, ամեն մի պատանի կժպտա սիրալիր և կասի՝ սա մեր Վախթանգ Անանյանն է։

Բոլորին ծանոթ է նա, բոլորը սիրում են նրան։ Ո՞վ չի կարդացել Անանյանի պատկերավոր լեզվով ու սրտի թրթիռով գրված որսորդական պատմվածքները, որոնք մեր լեռնային ծաղկունքի վաղորդյան բուրմունքն ունեն և շնչում են ցողաթաթախ թարմությամբ։

Հայրենի բնության նկատմամբ տածած խորունկ սերը դեռ պատանի հասակում նրան որսորդ դարձրեց։ Հրացանն ուսին շրջում էր նա օր ու գիշեր հայոց անդնդախոր ձորերում, ծաղկածիծաղ լեռներում ու կուսակույս անտառներում և հենց այդտեղ, բնության գրկում էլ ծնվում էին նրա պատմվածքների մտահղացումները։

Վ. Անանյանը սովետահայ նշանավոր գրողներից մեկն է։ Նրա պատմվածքները, հանրածանոթ «Սևանի ափին» վեպը, և «Հովազաձորի գերիները» վիպակը թարգմանվել են ոչ միայն Սովետական Միության ժողովուրդների, այլև արտասահմանյան բազմաթիվ լեզուներով։

Լրացավ սիրելի գրողի ծննդյան 60-ամյակը։ Ցանկանք նրան որսորդական կայտառություն և ստեղծագործական նորանոր հաջողություններ։




(Կրճատ)

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

համերի և հոտերի մեջ ձմերուկի հոտը ուղեկցել է ինձ շուրջ կես դար, և երբ մոտս ձմերուկ են կտրում, ճիշտ այն բույրն եմ առնում, անդիմադրելի, գայթակղիչ բույրը, ինչ զգացի, երբ մեր սարում առաջին անգամ ճաշակեցի հիմա սովորական, իսկ այն ժամանակ ինձ ինչ-որ երկնային բան թվացող այդ պտուղը։ Միևնույն ժամանակ ձմերուկն իմ մեջ արթնացնում է ուրախ և տխուր հուշեր, պատմություններ իմ մանկությունից, որոնց ուզում եմ, որ տեղյակ լինեն իմ ընթերցողները։

## ԻՄ ԸՆԿԵՐ ԱՐԱՄԸ ՀԻՎԱՆԴ Է...

Այո, իմ հորթարած ընկեր Արամը անակնկալ կերպով հիվանդացավ։ Այդ օրը ձուկ էինք բռնել Դիլիջանի վերին ծորերից եկող Բլդան կոչվող գետից, թրջվել էինք, քնել մի խոնավ փոսում և դրանից Արամը մրսել էր։

Վրանում մի հին վերմակի տակ պառկած, զառանցում էր իմ ընկեր Արամը, իսկ քամին վզզում էր վրանի եղեգնյա պատերի արանքից և շվշվում թաղիքի կարկատանների մեջ։

Մենք՝ նրա հորթարած ընկերները՝ Գրիգորը, Սատանա Արտուշն ու ես, մտել էինք վրանը ու փայտե թախտի ծայրին լուռ կանգնած՝ նայում էինք մեր հիվանդ ընկերոջը։ Միշտ զվարթ և երկարուկ նրա դեմքը այժմ հրդեհվում էր, ու այդ ներքին հրդեհի ցոլքերը մենք տեսնում էինք այրվող աչքերի մեջ։ Գունատ ճակատը քրտնած էր, մազափունջը՝ քունքերին կպած, հայացքը անհանգիստ էր ու բորբոքված, նիհար կուրծքը բարձրանում-իջնում էր արագ-արագ։

Ես երկար չդիմացա այդ ծանր տեսարանին և լալով դուրս եկա վրանից։ Ընկերներս լուռ հետևեցին ինձ։

Դուրսը մութ էր, ամպամած, հեռվում ամպրոպն էր գոռում, շները հաչում էին արխաջում։

Ծանր տրամադրությամբ պառկել էի տեղս, երբ ներս մտավ պառավ Մարանը ու մորս հարցրեց.

— Էս իրիկուն Սանիմանը գալու չի՞...

— Ո՞նց գա խեղճը, ամեն օր էն ծորից էս սարի ծերը գա՞լ կլինի,—վշտացած պատասխանեց մայրս։

Խոսքը իմ հոր մասին էր, որ բարտաշուլթյուն էր անում Դիլիջանում։

— Բա ե՞րբ ա գալու։

— Շաբաթ իրիկուն. Ի՞նչ կա որ։

— Ասում էի խնոցին ժաժ տամ, մի թիքա կարագ հանեմ, էգուց հետը Դիլիջան տանի՝ երեխու համար ծմերուկ առնի... Քոռանամ ես, քոռանամ, երեխեն կրակի մեջ ծմերուկի անուն ատալիս...

Ձմերո՜ւկ... Ձմերուկ որտեղի՞ց մեր ամպոտ սարերում, այն սարերում, ուր պատահում է Վարդավառի տոնին ձյուն է գալիս... Ծը՜ռ, ճը՜ռ, ճը՜ռ, երկու օր սայլով ճամփա պիտի գնայիր՛, որ հասնես ծմերուկի երկիրը՝ Ղազախ։ Սայլ չունե՞ս, իշով կգնաս, դարձյալ երկու օրում։ Ոտքով նույնպես կարող ես երկու օրում տեղ հասնել, բայց երկու օր էլ ետ պիտի գաս... Ու ծմերուկը ինչ-որ անհասանելի երազ էր լեռներում ծվարած մեր գյուղի**ի**ն բնակիչների համար։ Ձմերուկը Ղազախում էին վայելում, ուր հասունանում էր նա։ Ձմերուկը վայելում էին Երևանից եկած հարուստները, որոնց համար ֆուրգոններով թարմ պտուղ էին ուղարկում իրենց այգիների վերակացուները։ Ձմերուկ վայելում էին նաև Դիլիջանի խանութպանները։ Ի՞նչ բախտավոր մարդիկ են դրանք։

Մյուս օրը մեր խոսակցության թեման ծմերուկն էր։ Արտուշն իրեն հատուկ ֆանտազիայով պատմում էր.

— Ի՞նչ է ծմերուկը՝ հե՛չ, Քռի ափերին ոնց որ մեր քոլի աճարը... Որ ծմերուկի ծառերին ներքեվից վերև մտիկ ես տալիս՝ փափախդ գլխիցդ ցած է ընկնում, էնքան բարձր են, գլուխներն ամպերի մեջ... Որ տերևները թափվում են, տկլոր ճղներից կախված ծմերուկները՝ ոնց որ ամպերից կախված կանաչ փուչիկներ։ Արևս վկա, աչքովս եմ տեսել։ Ի՞նչ ես աչքերդ պլշացրել վրես, էլի քննու՞մ ես, մի թզանոց գիտնական, էնքա՜ն ծմերուկի ծառեր կան Ղազախում... Ձմերուկի երեք տարեկան թուփը մեր ամենամեծ աճարքու քոլին է, իսկ մեծ ծառը հարիր սաժեն բոյ ունի։ Պարզ չի՞ որ... որ սեմուշկի չափ աճարի ծառը էնքան մեծ լինի, բա փթանոց ծմերուկներ տվող ծառն ինչքա՞ն կլինի...

Չի նայում Գրիգորի խելացի աչքերի մեջ կայծկլտող հեգնանքին, չի նայում իմ շփոթմունքին ու շարունակում է.

— Որ կատարիցը ծմերուկը վեր է ընկնում՝ ոնց որ գերմանու բոմբը՝ դըմ՜բ...

— Բա որ ընկածը տրաքում է բոմբի նման ու ծառերն էլ էդքան բարձր են, ո՞նց են ծմերուկի բերքը հավաքում,—Արտուշին նեղը լծեց Գրիգորը, որ ինձնից թե մեծ էր, թե խելացի։

— Ին, բա՞ն ասացիր։ Դրա հնարն էլ են գտել։ Սելերով կրում են բամբակը մի մարդաբոյ հաստությամբ փռում են ծառերի տակ ու սպասում քամուն։ Քամին փչում է թե չէ՝ երկնքից գալիս են ծմերուկները, ո՜նց են գալի՜ս։ Դըմբ հա դըմբ, դըմբ հա դըմբ տալիս են բամբակին ու ճեղները կտրում... Ու բարձում են ուղտերին, բերում մեր աչքի առաջով անց կացնում, որ բեռաններիս ջուրը գնա, հոգիներս էլ հետը...

## ՄԻ ԽՇԱՎՈՐ ՍԱՐ՛Ն Է Գ՛ՆՈՒՄ



Մի ծանր գիշեր էլ անցկացրին Արամենց վրանում։ Մայրս այդ գիշեր տուն չեկավ։ Հիվանդը նորից էր ծմերուկ ուզում, բայց ծմերուկ որտեղի՞ց։

Այդ գիշեր սարահարթի մյուս ափին կանգնած մեծ վրանում պայծառ լույսեր էին վառվում.. հարուստ Սողոմը քեֆի էր նստել Դիլիջանից հյուր եկած իր բարեկամի հետ։ Ոչխար էին մորթել, զանազան խորտիկների բույրը բռնել էր շրջակայքը, դրա հետ էլ՝ ծմերուկի խնձ ծանոթ բույրը։ Ամոթից հալ ու մաշ լինելով, պառավ Մարանը մի կտոր ծմերուկ էր խնդրել հիվանդ թոռան համար։ Տվել էին, չէին մերժել, բայց հետևից փընթփընթացել էին.

— Չեն թողնում, որ մարդ հալալ հաց ուտի...

Հարուստ մարդու սովորական զանգատ...

Առավոտյան մայրս համոզում էր Մարանին.

— Գնա մի կտոր էլ ուզի, ծմերուկի եղածն ի՞նչ ա, որ ամաչում ես։—

— Որ մեռնեմ՝ էլ գնալ չեմ։ Էն խոսքը որ նրանք ասացին՝ մի փութ մեղրով ուտվել չի։

Ի՞նչ անենք, որտեղի՞ց ծմերուկ ճարենք մեր հիվանդ ընկերոջ համար։ Նա էլ, տնաշենի տղան, համին է ընկել, էլ ուրիշ բան չի ուզում։

Հորթապահների ամբողջ կազմով խորհրդի նստեցինք։ Թե գնանք Դիլիջան, բա գյուղի հորթերը

ո՞վ հանդը տանի, տերերն ի՞նչ կասեն։ Թե մեկին ուղարկե՞նք, արդեն մեր խումբը մի մարդով պակասել էր, ամառվա շոգին էլ հորթերը պոչները ցցած փախչում են դես-դեն, որ ազատվեն իրենց հալածող տիզերից ու բոռերից. երբեմն արդեն հազիվ էինք զսպում նրանց։ Ի՞նչ արած. մեկս պիտի Դիլիջան գնար։ Բայց Արտուշը առա-



ջարկեց կտրել ձմերուկ տանողների ճամփան...

— Թե որ խաթրով չտան, կխլենք,—հայտարարեց նա՝ իր չոմբախի երկաթած գլխին նայելով։

— Չէ, խլելու հարց չկա, փող հավաքենք,—առարկեց Գրիգորը։

Փո՞ղ... փող այն ժամանակ մենք երազում էինք տեսնում։ Բայց մեր վրանում փող կար՝ ես տեղը գիտեի. ալյուրի ծայրին կապած, յուղի պարկի հետևը խցկած։ Իմ ապագա դասագրքերի փողն էր դա։ Ամեն շաբաթ երեկո հայրս ամբողջ շաբաթվա ծանր աշխատանքից հոգնած, սար էր բարձրանում, որ կիրակին հետներս անցկացնի։ Որմնադիրի ծանր գործիքներով պարկը դնում էր վրանի մի անկյունում ու որոտում էր վրաս.

— Արի մի էդ դեղնած երեսդ պաչեմ, այ լղար բալա...

Հետո ձեռքը տանում էր «լաստիկ» արխալուղի գրպանը, քիսան հանում և այնտեղից ծանր-ծանր ու հանդիսավոր դուրս էր բերում Նիկոլայի մի ահագին հինգկոպեկանոց, իշի պայտի չափ մի պղնձե դրամ, ու դնում էր նիհարիկ բուռս։

— Հավաքիր, որ աշունքը դասագիրք առնես։ Համա փիլիսոփա է դառնալու էս լղար բալեն հա՜,—հեգնում էր նա ու բարեհոգի ծիծաղում՝ թավ բեղերը ամբոմբացնելով։

Այդպես, գարնան և ամառվա ընթացքում պըղընձե մի քանի հինգ կոպեկանոցներ էին հավաքվել՝ իմ «դասագրքերի ֆոնդը»։

Ես ուսման ծարավի էի և ինձ համար գրքից թանկ բան չկար աշխարհում։ Չէ՜, ինչ եմ ասում, բա Արա՞մը... Ախր Արամը տոչորված սրտով ձմերուկ է ուզում։

Մի փոքր տատանվելուց հետո գրպանեցի գըրքերիս «ֆոնդն» ու հանդ գնացինք։ Այդ օրը հորթերը տարանք մեր լեռներից մեկի Քյամանդ կոչվող լանջը, որտեղով անցնում էր դեպի Թուրքերի յայլաները տանող ճամփան։

Կտրեցինք այդ ճամփան «դաչաղների» նման ու մեծ-մեծ քարերի հետև նստած՝ սպասում ենք։ Ահա ներքևից մեկը բարձրանում է։ Գալիս էր այդ՝ մարդը բարձած էշն առաջին, փափախը կըռնատակին դրած, մահակի չափ մի փայտ ուսին, որ երբեմն ցած էր իջնում խեղճ կենդանու փալանին, ու այդ ժամանակ, ամեն հարվածի հետ թրմփոց էր լսվում ու փոշի էր բարձրանում կենդանու փալանած մեջքից։ Եկավ հավասարվեց մեզ և երբ գլուխը վեր քաշեց՝ մահակներով զինված երեք պատանի տեսավ իր առաջ ցցված։ Սալամ տվեց, սալամ առավ, որ անցնի, մենք առաջը կտրեցինք։ Հարցական նայեց։

— Ի՞նչ եք ուզում, այ բալեք...

Դեմքն արևից կիզված, վզի կնճիռները խաշված, ցանցառ մազերով ու երկարուկ գլխով մի ծեր մարդ էր նա։ Իրենց կրոնական տոնի առթիվ նրա գլխի կենտրոնը սափրված էր մինչև ծոծրակը, իսկ կարճ մորուքին հինա էր դրված։ Ձեռքի փայտը պատ տվեց մեջքին, շտկեց կքված ողնաշարը, ճռճռացրեց, ապա սրածայր փափախով սրբեց գլխի քրտինքն ու նորից հարցրեց.

— Ի՞նչ եք ուզում, ի՞նչ կա։

— Ձմերուկ չունե՞ս,—համարձակ առաջ գալով հարցրեց Արտուշը։ Նա թուրքերեն խոսում էր, մենք՝ մենք էլ մի քիչ գիտեինք։

Մարդը լռեց, տատանվում էր։

Էշն ազատություն էր ստացել ու իր երկար ու նրբին շրթունքներով տնտղում էր ճամփի եզրի

կանաչն ու պոկում փռուացնելով (երևի նրանց վրայի փոշին էր փչում յուրովի)։ Նրա մեջքին մի չալ խուրջին կար. ամեն կողմում՝ մի կլոր բան։ Փալանի հետևի օղից մի շիշ էր կախված՝ նավթով լիքը։

— Ինչ ասեմ, երեխեք,—վերջապես խոսեց ծերունին։—Ձեզանից պահեմ՝ ալլահից ո՞նց պահեմ. երկու ձմերուկ եմ բերել հետս, էն էլ քյուլփաթիս եմ տանում. դե Ղազախում մրգի սովոր երեխե՞ք, էն սարի ծերին էս ա, երկու ամիս ա մրգի համար ալալին են տալիս...

— Քիրվա, ախր մեր ընկերը հիվանդ է, դեղապետի համար ենք ուզում,—մեջ մտավ Գրիգորը։

Մարդը լռեց, տատանվեց, ապա նայեց ներքևում խորացող Դիլիջանի ձորին։

— Սալահլվեցի Ալլահ բեզն իրա մարդկանցով հիմի ուր որ է կերևա ներքևում։ Գալիս են ձիերն ու ուղտերը բարձած։ Ամեն բան բերում են հետները, նրանք կտան, նրանցից ուզեք... Չո՛շ,—խփեց նա իշին, որ առաջ գնա, Արտուշը աչքով արեց Գրիգորին, իսկ սա հայացքով սաստեց, թե՝ «Չհամարձակվի՛ս», ու մտախոհ ասաց.

— Ալլահ բեզը մեզ բան չի տա...

— Հա, նրա զինված մարդիկ ձեզ իսկի մոտ էլ չեն թողնի,—համաձայնեց մարդը՝ մեր ճաքճքված ու բոբիկ ոտքերին նայելով և ապա մի փոքր էլ մտածեց։—Գիտե՞ք ինչի չեմ խուրջինը սրտալի բաց անում, երեխեք։ Մի ձմերուկի մալյաթն ի՞նչ է որ, իմ բոստանը լիքն է ձմերուկով։ Խաբար եմ առել, որ իմ երեխանցից մեկը դողացնում է։ Դե, դուք գիտեք, որ ձեր անմահական աղբյուրները չունենք. Քռի պղտոր ջուրը խմում ենք ու դողէրոցք ընկնում... Յախշի,—ասաց նա մի կտրուկ շարժումով արձակեց խուրջինի աջ թայի բուղը. մի խոշոր ձմերուկ հանեց. տվեց

## ԲԶԵԶԸ

ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ

— Ի՞նչ ես անում, ա՛յ բզեզ,
Նստած ծառին քեզուքեզ...
— Երբ որ քամին շարունակ,
Ինչպես սիրուն ճոճանակ,
Այս տերևն է օրորում,
Աչքիս հանգիստ քուն բերում.
Ես երազում, աչքս խուփ,
Տեսնում եմ մի դալար թուփ,
Թփի վերև՝ վառ արև,
Թփի վրա՝ մեծ տերև,
Ու տերևին մուշ-մուշիկ,
Քնում եմ ես անուշիկ։

Արտուշին և խուրջինի դատարկ կողմում ձմերուկի ծանրության մի քար դնելով՝ քշեց իր էշին։

Ես գյուղացու թևից քաշեցի և նրան մեկնեցի պղնձե դրամները։

— Ինչի՞ ես ինձ անպատվում, բալա ջան, ես քեզ ինչ արի,—նեղացած ասաց մարդն ու իր էշի հետ շարժվեց առաջ։

Արտուշն այնպես էր կարկամել, որ չկարողացավ նույնիսկ շնորհակալություն հայտնել։ Կարծում եմ, որ այդ հանդուգն տղան իր կյանքում այդպիսի պարտություն դեռևս չէր կրել...

Ներքուստ ուրախ, բայց անխոս, մենք շտապում էինք դեպի վրանները։

Դե, դրանից էլ մեծ երջանկությու՞ն մեզ համար։

# ՎԱՂԸ ՆՈՐԻՑ ՊԱՀՄՏՈՑԻ ԿԽԱՂԱՆՔ

ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ

Նկ. ԱՇՈՏ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ

Բակը մթնում է, և իրիկնային կապույտը կարծես ձգտում է իր մեջ ձուլել ամեն ինչ։ Բայց ծիրանենիների ծաղիկները չեն ձուլվում։ Ցուրտ է։ Ես ու Գոհարը կանգնել ենք բակում՝ Արամենց պատշգամբի մոտ։ Մի շաբաթ առաջ մենք զգացինք, որ արդեն գարուն է։ Իսկ այդ զգացումը իր հետ բերում է պահմտոցի, Սոնա մայրիկի քրթմնջոցը, որ այլևս դադար չի ունենա մեր ձեռքից, Աբգար հայրիկի անվերջանալի պատմությունները դռան սալաքարին նստած՝ իրենց երկրի գարնան և Վանա տառեխի մասին։ Այսօր էլ պահմտոցի չենք խաղա, որովհետև արդեն ուշ է, որովհետև բոլորը գնացին տուն, իսկ ես ու Գոհարը դեռ կանգնած ենք Արամենց պատշգամբի մոտ։ Այսօր Արամենց ծնողական ժողովն է։ Ուր որ է, նրա հայրը կվերադառնա դպրոցից։ Այսօր Արամը տուն գալուց անմիջապես հետո նստեց դասերը պատրաստելու,

ինչպես ամենաօրինակելի աշակերտ, հետո երկու դույլ ջուր բերեց և փայտ կոտրեց օջախի համար։ Դրանից մենք կռահեցինք, որ ինչ-որ բան կարգին չէ։

— Վարսիկ,— ասում է Գոհարը,— ա՛յ կտեսնես, նա անպատճառ «երկուս» կունենա քառորդում։

Այդ նույն բանը Գոհարը արդեն մի քանի անգամ կրկնել էր, ճիշտն ասած, ես էլ եմ կասկածում, բայց պնդում եմ.

— Չի՛ կարող պատահել։

Մինչև այժմ մեր բակի երեխաներից ոչ մեկը «երկուս» չի ունեցել քառորդում, իսկ Արամը ամենամեծն է, նրան բոլորը լսում են։

— Տեսնես ինչից է «երկուսը»,— նորից խոսում է Գոհարը,— գուցե գրավորից, հը՞։

Գոհարը մեծ է ինձնից վեց ամսով, Արամը մեծ է Գոհարից մի ամբողջ տարով։ Եթե Արամը քառորդում «երկուս» ունենա, ապա տարբերությունը կջնջվի։ Իսկ Գոհարը շատ է ուզում մեծ լինել, ուզում է, որ բոլորը իրեն լսեն։

— Վարսիկ,— Գոհարը քաշում է թևիցս և մոտենում է ականջիս, կարծես տանը Արամը կարող է իրեն լսել,— գուցե նա մի քանի հատ «երկուս» ունի։

— Չի կարող պատահել,— կրկնում եմ ես։

— Չի կարող, չէ՞,— Գոհարը թեթևացած շունչ է քաշում։ Եվ ես զգում եմ՝ նա չի ուզում, որ Արամը մի քանի հատ «երկուս» ունենա։

— Տանը նրա վրա կխոսեն,— ասում է Գոհարը,— հայրը շատ խիստ է։

— Գուցե «երկուս» չունենա,— ասում եմ ես և այդ րոպեին մենք երկուսս էլ շատ ցավում ենք Արամի համար, որը բակ դուրս գալու փոխարեն նստել է տանը և ով գիտե ինչ անհետաքրքիր գիրք է կարդում։ Եթե նա «երկուս» ունենա, նրան ընդհանրապես չեն թողնի, որ խաղա։

— Ճիշտ է,— համաձայնում է Գոհարը։

Հիմա մենք ավելի անհամբերությամբ ենք սպասում Արամի հոր գալուն։ Եթե Արամը բակ չիջնի, միայն փոքրերի հետ խաղալը անհետաքրքիր է։ Մեր կողքին հայտնվում է Գոհարի փոքր քույրը։ Նա անձայն նայում է մեզ։

— Տուն գնա,— ասում է Գոհարը։

— Իսկ ես մայրիկին կասեմ, որ դու Վարսիկենց տանը չես։

— Մենք միայն նոր դուրս եկանք,— ասում եմ ես։

— Ջրաներկդ կտա՞ս,— հարցնում է Աչիկը։

— Վերցրու,— ստիպված ասում է Գոհարը, և Աչիկը տուն է վազում։

Նորից մնում ենք մենակ։

— Ցուրտ է,— ասում է Գոհարը։

— Ցուրտ է,— ասում եմ ես։

Արամի հայրը հանկարծ մտնում է բակ, և մենք հազիվ ենք ծլկում։ Նա մեզ չի նկատում։ Նրա հետևից աղմուկով փակվում է դուռը։

— Նայիր պատուհանից,— խնդրում եմ Գոհարին։

— Դո՛ւ նայիր։

Կանաչ պատի վրա սև ստվեր է երևում, ցրցված ականջներով Արամի ստվերը։ Նրա կողքին դաշնամուրն է, որը ոչ ոք չի նվագում։



Սենյակի մյուս ծայրին պահարանն է՝ վրան բյուրեղապակյա ծաղկամաններ։ Ես հետաքրքրությամբ եմ զննում նրանց սենյակը, որովհետև մենք երբեք այնտեղ չենք լինում։

— Ի՞նչ կա,— հարցնում է Գոհարը։

— Ոչինչ չի երևում։

Ու հանկարծ դռան շրխկոցի հետ պատշգամբ է դուրս գալիս Արամը։ Նա իջնում է փայտե սանդուղքով՝ ջրամանը ձեռքին։ Մեզ տեսնելով կանգնում է։ Ես ու Գոհարը սսկվել ենք։ Նա էլի այն Արամն է, որին բակում բոլոր երեխաները լսում են։

— Ի՞նչ եք անում,— հարցնում է նա հետաքրքրված։

— Թարմանում ենք,— հնարում է Գոհարը,— հետո խնդիրներ ենք վճռելու։

— Ձեր ծնողական ժողովը ե՞րբ է,— հարցնում է Արամը։

Բերաններս կարծես ջուր ենք առել։ Իսկ Արամը երևի ուզում է, որ իրենց ժողովի մասին հարցնենք։

— Միայն մի երեք ունեի,— ուրախությունը չի կարողանում զսպել նա,— ռուսերեն գրավորից, շատ էի վախենում։

Ես ու Գոհարը նայում ենք իրար, նայում ենք Արամին։ Զարմանալի թեթևություն ենք զգում այդ րոպեին։ Լավ է, որ ամեն ինչ նորից սովորական դարձավ և մի փոքր էլ անհետաքրքիր։ Վաղը նորից պահմտոցի կխաղանք։

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ

Այս համարից սկսում ենք շարունակաբար տպագրել գրող Խ. Գյուլնազարյանի արկածային նոր վիպակը: Տպագրությունը կավարտվի 1965 թվականի մարտ-ապրիլ ամիսներին:

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

## ՎԱՐՅՈՒՍ

*Մեր թաղում Վարյուս անունով ուրիշ մարդ չկար, և մի՞թե Վարյուսը հայի անուն է: Թաղի բոլոր անունները սովորական էին, հասկանալի՝ Անուշավան, Գեղամ, Սրբուհի... Սովորական ու հասկանալի էր անգամ պապիս անունը՝ Միլիտոս: Իսկ Վարյուսը ես ոչ մի կերպ չէի կարողանում հասկանալ: Վարյուսն եկավ, Վարյուսը գնաց, Վարյուսի թոռը հիվանդացել է կարմրուկով... Վարյուս, Վարյուս, Վարյուս... Ես, իհարկե, ճանաչում էի նրան, թաղում բոլորը իրար ճանաչում էին, բայց ամեն անգամ նրա անունը լսելիս, ինձ թվում էր, թե խոսքը ինչ-որ հիմնարկության մասին է: Այդ տարիներին նոր անուններով հիմնարկություններ շատ կային. Զագս, Տ. Մ. Դ., Ռ.Փո: Երբեմն էլ թվում էր, թե անծանոթ պտղի անուն են տալիս, ինչպես օրինակ անանաս, բանանաս (ես չգիտեի, որ պտուղը կոչվում է բանան), իսկ հորեղբայրս, որ երեք տարի ծառայել էր հայտնի բուսաբան պրոֆեսոր Բեդելյանի լաբորատորիայում, մի անգամ պարծենալով ասել էր (ես այդպես էլ չհասկացա, թե ինչ կար պարծենալու), որ բուսաբանական աշխարհում ծիրանը հայտնի է Փրունուս արմենիկուս անունով:*

*Բայց, համենայն դեպս, այդ մարդու անունը Վարյուս էր, և ոչ թե Վարոս, ինչպես պնդում էր մեր հարևան մաշակար Երեմը, Վարյուս, Վարյուս Աստվածատրյան: Վարյուսը նշանավոր էր նաև ուրիշ կողմերով: Վարյուսը գիտեր ռուսերեն: Մեր թաղում այդ տարիներին դա հանաք բան չիմանար: Մաշակար Երեմն, օրինակ, ռուսերեն միայն մեկ բառ գիտեր «դրաստի», հայրս գիտեր նաև «խարաշո». «Նետ-խարաշո», մորս ու մյուսների մասին խոսք էլ չի կարող լինել: Մինչդեռ Վարյուսը, ասում էին, վարժ խոսում էր ռուսերեն, թեև ոչ ոք չէր լսել, թեև Վարյուսը ոչ մեկին չէր կարող գտնել իր ռուսերենը նրա գլխին սաղացնելու համար:*

*Վարյուսը ձախ ձեռքի երեք մատը չուներ, չուներ նաև ձախ ոտքը: Դրա փոխարեն լայն շալվարի տակ ճռճռում էր փայտե ոտքը, որը, ինչպես մաշակար Երեմն էր ասում, իսկական ոտքից երկու անգամ էժան էր նստում: (Վարյուսն այդ ոտքի համար մաշակար Երեմին կոշիկ չէր պատվիրում, ոտքը վերջանում էր պողպատե մեխով):*

*Վարյուսը մեր թաղի ամենագեղեցիկ տղամարդն էր՝ բաց-սպիտակ, խիտ գանգուրներով, կապույտ, բարի աչքերով, գունատ դեմքով, թավ բեղերով ու խնամքով խուզած ճերմակ մորուքով: Իմ հոր կամ մաշակար Երեմի հետ համեմատած՝ մի իսկական Ապոլոն (այս բառը հիմա եմ ասում, այն ժամանակ ես Ապոլոնի մասին գաղափար չունեի):*

*Բայց ամենից զարմանալին այն էր, որ հաշմանդամ Վարյուսը թաղի, ինչ եմ ասում թաղի, ամբողջ քաղաքի ամենալավ ատաղձագործն էր:*

— Վարպետ Վար-յուս է կանչողն ասա:

— Կարևոր է:

— Ո՞նց է:

— Ի՞նչ ասիր:

— Տանները:

— Ումի՞ց ասար:

— Համբարձումից:

Ժպտում էր.

— Ժուլիկ յալկա է: Ու տանները ոտքս աշխատանք չի, ու արժի ութ ոտքի, անենք երկուսն էլ ասելի:

— Ո՞նց թե:

— Գնա, ասա՝ վարպետ Վարյուսն ասում էր երեք ոտքին տար:

— Ո՞նց կլինի:

— Դու գիտես: Մարդ կա փողը շորի ծառից է քաղում:

Հաջորդ օրը Վարյուսի խոսակիցը գնում էր Համբարձումի արհեստանոցը.

— Վարպետ Համբարձում:

— Հրամմեր:

— Վարպետ Վարյուսը...

Համբարձումը սրում էր ականջները.

— Հը՞:

— Հեչ, ասում էր կոմորը տաս մանեթանոց է:

— Ձեր մերը չմեռնի,—ժպտալով գժգժում էր Համբարձումը, ձեր թաղեցիներին բան ծախել կլինի՞: Ու երեք ոտքին, գիտեի, նրան չեմ էլ ծախել:

Վարյուսն այնպիսի ճոճեր էր չարխում, որ գրցերից «սատայում» էին անցում ու պտտվում մինչև ճամփանականությունը: Վարյուսն այնպիսի արկղներ էր սարքում, որ փակը չէիր բացի ու բացը չէիր փակի, եթե զարմերը չասեր: Մի խոսքով Վարյուսն ամենահմայիչ մարդն էր մեզ համար, Ծամանաղանց իր խորհրդավոր անունով:

ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

## ՄԵ՛ՆՔ

Ես տասներկու տարեկան էի, Կարոն՝ տասներկու տարեկան ու երկու ամսական: Կարոն իրեն ինձնից մեծ էր համարում, ու ես դրա դեմ առարկելու ոչ մի հնարավորություն չունեի: Կարոն ինձ ձեռ առնելու սրբիչ բան էլ ուներ: Չգիտեմ ինչու, ծնողները իմ անունը դրել էին Դերենիկ: Ես վերջին երկու տարին բոյ էի քաշել, երկարել էի ձգած ռեզինի նման, ու թաղի բոլոր տղաները ինձ յող-



յող Դերո էին ասում: Մինչդեռ Կարոն ինձնից մի թիզ կարճահասակ լինելով իրեն համարում էր միանգամայն նորմալ ու ամեն անգամ ինձ հետ վիճելիս ձևափոխում էր ժողովրդական առածը.

— Իզուր չեն ասում՝ բոյը երկար, խելքը կարճ:

Մենք շատ էինք վիճում ու ամենից շատ կոնֆետի թղթերի համար: Դրանք գույնզգույն թղթեր էին, որ հավաքում էինք, փողոցներից ու Անգլիական այգուց (հիմա կոչվում է 26 կոմիսարների այգի) և փոխանակում իրար հետ:

Բայց մենք, իհարկե, ընկերներ էինք, այն էլ այնպիսի ընկերներ, որ ամեն օր յոթերորդ դասարանցի Միսակը ինձ ծեծում էր Կարոյի համար, իսկ վեցերորդցի Վաղոն Կարոյին ծեծում էր ինձ համար:

Այն էլ ասեմ, որ Կարոն հայր չուներ, մայրը՝ Փառանձեմը, օր ու գիշեր զբաղված էր սրա-նրա լվացքն անելով ու Կարոն ամբողջ օրերով մեր տանն էր լինում:

Մենք երկուսս էլ սովորում էինք հինգերորդ «ա» դասարանում: Կարոն առաջին աշակերտն էր, ես՝ երկրորդը: Չէ, ճիշտ եմ ասում, Կարոյի հետ մրցել անհնարին էր, նա դասը հենց դպրոցում էր սովորում, ընկեր Նազիկի պատմածից, մինչդեռ ես երեկոները մեծ քրոջս՝ Զարիկի հսկողությամբ պարապում էի:

Մայրս սիրում ու երես էր տալիս ինձ ու իմ պատճառով սիրում ու երես էր տալիս նաև Կարոյին: Հայրս գոհ էր մեր մտերմությունից և ինձ համար դասագիրք գնելիս մեկն էլ Կարոյի համար առավ:

(Շարունակելի)




ԲԱԲԿԵՆ ՇԱՀՈՒՄՅԱՆ

Երեխաները անհոգ խաղում էին ու թավալվում երեքներանգ ծաղիկների մեջ, վազում թիթեռների հետևից և ուրախանում ամեն մի ծաղկով:

Մեծահասակ երեխաների մի խումբ շրջագայության էր գնացել մոտակա ձորակը, ուր նրանց հաջողվել էր բազեի մի ձագ որսալ: Թևավոր գիշատիչի ձագն իրեն վատ էր զգում գերության մեջ: Անհաշտ, թաքցնող հայացքով բազեի ձագը նայում էր իրեն գերողներին ու նրանց ցույց տալիս իր մագիլները:

— Ի՞նչ անենք այս բազեին,— հարցրեց նա, որին վստահել էին թռչունի պահպանությունը: Տեսնելով, որ բոլորը լուռ են, նա ավելացրեց.— Զարմակե՞նք գնա, մեղք է:

— Մի քանի օրից երևան պիտի վերադառնանք, կհանձնենք կենդանաբանական այգի,— առարկեցին նրան:

— Չէ, ես մի ծրագիր ունեմ,— ասաց երեխաներից ամենամեծը՝ Սուրիկը,— եկեք ձեզ ասեմ այդ մասին: Եթե համաձայն եք, այդպես էլ անենք:

Երեխաները իսկույն գլուխ-գլխի հավաքվեցին ու Սուրիկը նրանց հաղորդեց իր միտքը:

Նկ. ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԱՐԱՄԲԵՅԱՆԻ

Բոլորի դեմքերը պայծառացան:

— Համաձա՛յն ենք...

— Համաձա՛յն ենք, համաձայն ենք,— բացականչեցին բոլորը:

— Այդ դեպքում մինչև երեկո ոչ ոք չպետք է իմանա մեր բազեի մասին: Պետք է թաքցնել այնպես, որ ոչ ոք չտեսնի:

Ու երեխաները գոհ նրանից, որ այդպիսի գաղտնիք ունեն, ուրախ-ուրախ շարժվեցին դեպի մանկապարտեզ:

Երեկոյան մեծ հանդես էր: Այդ մանկապարտեզում սովորություն էր դարձել, որ երբ լրանում էր երեխաներից որևէ մեկի տարին, ուրախ հանդես էին կազմակերպում, ուրիշ խոսքով, նշում էին նրա ծննդյան օրը:

Այդ օրը մանկապարտեզի սաներից մեկի՝ Վի-

լիկի ծննդյան օրն էր, և երեխաները մեծ հանդիսավորությամբ էին կատարում նրա տարելիցը, որովհետև Վիլիկի հայրը նշանավոր օդաչու էր եղել, իսկական հերոս և զոհվել էր գերմանական զավթիչների հետ մարտնչելիս:

Երբ հանդեսը վերջացավ ու Վիլիկին նվերներ էին տալիս, Սուրիկը ձայն խնդրեց Արուս մորաքույրից: Նա ոտքի ելավ ու ասաց.

— Այսօր մենք ընկերներով զբոսանքի գնացինք ձորը և այնտեղ մի բազեի ձագ որսացինք: Քանի որ Վիլիկի հայրը իսկական բազե էր, մենք որոշեցինք մեր որսը նվիրել նրան՝ իսկական բազեի ձագին՝ իր ծննդյան օրը:

Քիչ հետո երեխաները երևացին բազեի ձագի հետ միասին: Նրանք բազեին բերում էին արձակած: Նրա ոտքից երկար, բարակ մի պարան էին կապել, ու բազեն, ճախրելով երեխաների գլխավերևում, նրանց հետ գալիս էր հանդեսի վայրը:

Տղաները մոտեցան ու բազեի ձագի պարանը հանձնեցին Վիլիկին: Նա քաշվելով վերցրեց պարանն ու ամուր պահեց իր ձեռքում՝ ուրախ նայելով երեխաների գլխավերևում ջղային կերպով թևերը թափահարող բազեի ձագին:

Ծափերի որոտը տարածվեց մանկապարտեզից էլ շատ հեռու: Բոլոր երեխաների սրտով էր այդ անսովոր նվերը:

* * *

Պետական օպերայի դահլիճն ալեկոծվում էր: Ժողովրդի անվերջ ծափերի ու բացականչությունների մեջ արտահայտվում էր և՛ հիացում, և՛ անկեղծ ուրախություն ելույթ ունեցողի համար: Այդ օրը սովորական հանդես չէր օպերայի ու բալետի թատրոնում:

Բեմի վրա նշանավոր ոչ մի դերասան չկար: Այնտեղ իր պարթև հասակով, ժպտադեմ կանգնած էր ծովային նշանավոր օդաչու Նելսոն Ստեփանյանը, որ արձակուրդին տուն էր եկել հարազատներին տեսնելու: Նրան երևանցիները խնդրել էին, որ պատերազմական հուշեր պատմի:

Ամենից առաջ հանդիսականները հիացած էին իրենով՝ անվեհեր օդաչուով: Բոլորը լսել էին նրա մասին, գետեին նրա բոլոր սխրագործությունները, թերթերում տեսել էին նրա լուսանկարները, բայց քչերն էին անձամբ տեսել նրան:

Եվ երբ նա բեմ բարձրացավ, բարձրահասակ, թիկնեղ, ժպտացող խելոք աչքերով ուղջունեց իրեն հանդիպողներին, ծափերի նոր փոթորիկ բարձրացավ:

Նա խոսում էր համեստ, պարզ, պատմում էր իր և իր ընկերների կատարած սխրագործությունների մասին:

Ահեղ պատերազմի այդ պարզ շարադրանքի մեջ և՛ ոգևորիչ, և՛ տրտմաբեր, և՛ ծիծաղելի շատ բան կար: Ունկնդիրները մեծ հափշտակությամբ էին լսում հռետորին, անկեղծորեն ծափահարում նրան:

Նելսոն Ստեփանյանի՝ պատերազմի տարիներին կատարած սխրագործությունները լավ հայտնի են բոլորին: Բայց նրա պատմածների մեջ մի փոքրիկ դիպված կար, որը շատ հուզեց բոլորին:

Նա ասաց մոտավորապես հետևյալը.

— Օգոստոսի 14-ը ինչպիսի օր էլ լինի, եղանակը թռիչքային լինի, թե վատ, ինչպիսի վիճակում էլ լինեմ ես՝ առողջ, թե քիչ հիվանդ, միևնույն է, այդ օրը ես կանոն եմ դարձրել ինձ համար, անպայման օդ բարձրանալ և որևէ վնաս պատճառել թշնամուն: Այդ ես անում եմ իմ որդու համար և այդ օրվա իմ «վաստակը» գրանցում եմ նրա հաշվին. չէ որ նա ընդամենը 3 տարեկան է և չի կարող վնաս պատճառել թշնամուն: Այնպես որ երբ մեծանա, իմ տղան իր հաշվում մի քանի խփված մեսսերշմիդտներ կունենա...

...Վիլիկը Նելսոն Ստեփանյանի որդին է: Ահա, թե ինչու նրա ծննդյան օրը ընկերները նրան բազեի ձագ նվիրեցին:



# ԻՐԻՆԱ-Արտիստը

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ



Ն. ՆԱԴԵԺԴԻՆԱ

Մայրիկը հիվանդանոցում էր, և հայրիկն ու Կիրիկը ապրում էին տղամարդու նման. այսօր պահածո, երեկ պահածո, ամեն օր պահածո: Եվ մեկ էլ՝ խաշած կարտոֆիլ... Խոհանոցում կախած էր* թավան, բայց հայրիկն ու Կիրիկը նրանից խուսափում էին այնպիսի զգուշությամբ, ինչպիսի զգուշությամբ աղվեսն է խուսափում թակարդից:

— Դատարկ բան է,— ասում էր հայրիկը,— կարտոֆիլը կարտոֆիլ է մնում, ինչպես էլ այն պատրաստես:

Բայց դրա փոխարեն ընթրիքն արագ էր վերջանում, և ամեն մեկն զբաղվում էր իր սիրած գործով: Հայրիկը ամբողջովին քանդում էր ռադիոընդունիչը: Իսկ Կիրիկը, նստելով նրա դիմաց, լուցկու պիտակների հավաքածուն էր կպցնում տետրին:

— Հայրիկ, նայի՛ր: Գեղեցիկ է, չէ՞:

— Չափազա՜նց:

— Հայրիկ, դա գեղեցիկ բան չէ, դու իմ ասածին չես նայում:

— Կարևոր չէ...

Հայրիկը երազանքով նայում էր դատարկ արկղին, որը մի ժամանակ ռադիոընդունիչ էր եղել:

— Ես կարող էի մի նորարարություն անել,— ասաց նա,— բայց ստիպված եմ գործը թողնել, որ վառարանը վառեմ: Ի՞նչ կլինի, որ այսօր չվառենք: Ի՞նչ ես կարծում, կապրե՞նք:

— Կապրե՜նք,— աշխուժորեն պատասխանեց Կիրիկը,— շոյված այն բանից, որ հայրիկը խորհրդակցում է իր հետ:

Այդպիսի հեշտությամբ էլ նրանք համաձայնության եկան ամանները լվանալու հարցում: Որոշվեց. քանի դեռ պահարանում մաքուր աման կա, նեղություն չքաշել, իսկ հետո լվանալ բոլորը միանգամից:

Եվ ահա վրա հասավ այն օրը, երբ Կիրիկը պահարանից հանեց վերջին մաքուր բաժակն ու կաթնամանը:

— Այս բոլորը դատարկ բաներ են,— ասաց հայրիկը, կաթնամանով խմելով թեյը,— բայց ամանները լվանալու ժամանակն է:

Վերջացնելով թեյը նրանք այնպես լվացին կեղտոտ ամանների այդ բլուրը, որ Կիրիկին թվում էր, թե պահարանի մեջ էլ բաժակները շարունակում են ճռճռալ:

— Իսկ հիմա պառկիր քնելու,— ասաց հայրիկը,— ի դեպ, Կիրիկ, քեզ չի թվում, որ քո մահճակալը կարճ է քեզ համար:

— Այն էլ ինչպե՜ս: Ուզում ես, հայրիկ, ես քեզ ցույց տամ, թե ինչպես եմ կծկվում... ուզո՞ւմ ես:

— Ոչ: Առանց այն էլ պարզ է: Վաղվանից կքնես ճաշասենյակում, բազմոցի վրա:

— Իսկ մահճակա՞լը, հայրիկ: Գուցե ես այն հանձնեմ որպես մետաղի ջարդոն:

— Դա շատ է,— ասաց հայրիկը,— այդ մահճակալին կքնի Իրան: Վաղը ես նրան մայրիկի հետ տուն կբերեմ:

Մի շաբաթ առաջ հայրիկն ասել էր, որ ընտանիքը մեծացել է. աղջիկ է ծնվել:

— Շա՞տ գեղեցիկ է, ինչպես հեքիաթո՞ւմ,— հարցրել էր Կիրիկը:

— Առայժմ դժվար է ասել: Օրինակի համար, նա դեռ մազ չունի:

Եվ այն ժամանակ Կիրիկը կարծել էր, թե հայրիկը կատակ է անում. իրենց ընտանիքում ոչ ոք չի ավելացել: Չէ՞ որ աղջկա համար ամենագլխավորը մազն է: Առանց մազի աղջիկ չի լինում:

Բայց պարզվում է, որ հայրիկը կատակ չի արել, և Կիրիկն անհանգստացավ: Ննջարանում նրա մահճակալը մայրիկի մոտ էր, իսկ ճաշասենյակում պետք է քներ մենակ:

— Հայրիկ, այստեղ փչում է: Բազմոցի վրա ես կմրսեմ:

— Որտե՞ղ է փչում: Հիմարությո՜ւն: Ննջարանում ավելի տաք չէ:

Կիրիկն անհանգիստ վեր-վեր էր թռչում բազմոցի վրա.

— Հայրիկ, այստեղ սապատի նման ուռած է: Սա բազմոց չէ, այլ ինչ-որ ուղտ:

— Ես չգիտեի, որ իմ տղան աչքածակ է: Մի այդպիսի մեծ տղա մահճակալը խնայում է քրոջը...

Այդ առաջին անգամն էին Կիրիկին մեծ ասում: Նա արագ նայեց բազմոցի վերևում կախված հայելուն: Ճիշտ է, որ ինքը մեծացել էր այս մի շաբաթում:

— Դու յոթ տարեկան ես, — ասաց հայրիկը. — իսկ Իրան՝ տասն օրական: Նա հիմա տան ամենափոքրն է: Դե լավ, գնա քնիր:

Կիրիկը գնաց ննջարան, հանվեց և պառկեց:

Ինչո՞ւ է աչքածակ: Բոլորովին էլ աչքածակ չէ: Նա պարզապես չի ուզում իր մահճակալը տալ այդ ճղճղան աղջկան: Դա իր մահճակալն է: Այստեղ նա երազներ է տեսել, երբ հրթիռով թռչում է Լուսին: Իսկ այն ուղտաբազմոցի վրա մի՞թե կտեսնես մի իսկական երազ: Եվ մահճակալը իսկի էլ կարճ չի նրա համար:

— Հայրիկ, — կանչեց Կիրիկը, — միայն ոտքիս մեծ մատն է հասնում մահճակալի ճաղերին:

— Ուզում ես, թող քիթդ էլ դիպչի: Եսասեր, — ճաշասենյակից հասավ պատասխանը:

Ամեն ինչ պարզ էր: Հայրիկը հիմա սիրում է միայն մայրիկին, ռադիո-ընդունիչը և մեկ էլ այդ աղջկան: Իսկ իրեն, իհարկե, չի սիրում, քանի որ ուզում է խլել մահճակալը: Կիրիկը խղճաց իրեն և մահճակալին, գլուխը խրեց բարձի մեջ ու դառնորեն լաց եղավ:

* * *

Վաղ գարուն էր, տարվա ամենաանբերեկ ժամանակը, երբ նավարկության են մեկնում թղթե նավերը, իսկ գրպանները լցվում են գունավոր բաներով: Այդ ժամանակ կարելի է թափառել բակում, ինչպես ծովափին՝ տեղատվությունից հետո: Ի՞նչ ասես որ այստեղ չես գտնի: Եվ բարակ մետաղալարի փաթիկ, և՛ զսպանակ, և՛ երկար մեխ, և՛ մինչև անգամ կանաչ ապակու կտոր, որ ասես թանկագին քար լինի:

Բայց Կիրիկն այսօր չէր նկատում իր ոտքերի տակ թափված գանձերը: Նա սեղմվել էր իրենց հողամասը հարևանի հողամասից բաժանող ցանկապատին:

Միշան սովորում էր չորրորդ դասարանում, և մայրիկն ասել էր, որ նա Կիրիկի ընկերը չի, բայց հարկավոր էր մեկի մոտ դատարկել սիրտը:

— Մի՛շ, — ցածր ձայնով կանչեց Կիրիկը:

Միշան զգուշաբար մոտեցավ ցանկապատին.

— Ա՜, այդ դո՞ւ ես: Ինչու բաց չես անում ձեր վարդենիները: Կնեխեն:

— Նեխում են՝ նեխեն: — Կիրիկի դարդը վարդենիները չէին: — Գիտե՞ս, Միշա, ես քույր եմ ունեցել: Նա թեև աղջիկ է, բայց մազ չունի:

— Օհո՜: Դու ի՞նքդ ես տեսել:

— Ես չէ: Հայրիկն է տեսել: Իսկ այսօր նրան բերելու են: Նրանք ուզում են ինձ տեղափոխել բազմոցին, որպեսզի նա քնի մահճակալի վրա:

— Օհո՜, — կրկնեց Միշան: — Սպասիր, նա դեռ քո գլխին կնստի: Բոլոր խաղալիքները կջարդի: Կորած է քո ջրի ատրճանակը:

— Իսկ չէ՞ որ աղջիկները ատրճանակ չեն կրակում...

— Նա կջարդի և չի էլ իմանա, որ դա ատրճանակ էր: Ո՞ւր է քո ատրճանակը: Ցույց տուր:

Կիրիկը լիզեց չորացած շրթունքները և գրպանից դանդաղ հանեց սագի թաթի գույնի ատրճանակը: Կատվի վրա ջրով կրակելու հոյակապ զենք:

Միշան ստուգեց հրհանը, փչեց փողի մեջ և թաքցրեց ատրճանակն իր գրպանում:

— Ինձ մոտ անվնաս կլինի, — ասաց նա ապուշ կտրած Կիրիկին, — էլ ի՞նչ ունես:

— Շաշկի... դա՞ էլ կջարդի: Հեծանի՞վն էլ:

— Շաշկին այստեղ բեր: Հեծանիվին կարծում եմ այնքան շուտ չի հասնի: Բայց առհասարակ բոլորը թաքցրու:

Կիրիկը սուրալով գնում էր տուն՝ փրկելու իր ունեցվածքը, միայն թե նա ուշացավ: Այգու ճանապարհով գալիս էին մայրիկն ու հայրիկը:

— Մայրի՜կ, — հանկարծ ճչաց Կիրիկը:

Նա ուզեց նետվել դեպի մայրը և հանկարծ ամաչեց: Բայց մայրիկը հավասարվելով Կիրիկին, ինքը նրան քաշեց դեպի իրեն:

— Բարև, տղաս: Դու ինչպե՞ս մնացիր առանց ինձ: Հայրիկին լսե՞լ ես: Չարություն չե՞ս արել:

Կիրիկը հառաչեց: Նա մայրիկին այնքա՜ն բան պիտի պատմեր, բայց ինչո՞ւ էր նայում այն մեծ ճերմակ փաթեթին, որ հայրիկի ձեռքերի վրա էր:

— Ալեքսեյ, — ճչաց մայրիկը, և նրա ձեռքը սահեց Կիրիկի ուսից: — Վայր կգցես: Ո՞վ է այդպես երեխա պահում:

Մայրիկը նետվեց, որ հասնի հայրիկին, իսկ Կիրիկը մնաց մենակ: Կարծես նա արդեն իր մայրիկը չէր: Մայրիկը մտածում էր միայն Իրկայի մասին, միայն նրա մասին:

Թող այդպես լինի, թող այդ Իրկան քնի Կիրիկի մահճակալին: Թող ջարդի նրա խաղալիքները:

Քանի որ նրան էլ չեն սիրում, նա կթողնի կգնա: Անտառ կգնա և դիտմամբ կմոլորվի: Օ՜: Այն ժամանակ նրանք կզղջան, այն ժամանակ նրանք դառնորեն լաց կլինեն. «Ո՞ւր է մեր Կիրիկը, ո՞ւր է նա, մեր փոքրիկը»: Բայց արդեն ուշ կլինի:

Եվ Կիրիկը վճռական կերպով հրեց դուռը:

* * *

...Անտառը դեռ չէր տերևակալել: Միայն ճյուղերի ծայրերը պարուրված էին նուրբ մշուշով: Հողը նրա ոտքերի տակ չպպում էր, կարծես շունչ էր քաշում, հառաչում: Իսկ ինչպես չհառաչեր: Նրան փեռեկում էին հաստակով մեկ շարժվող արմատները, նրան ուռցնում էին դեպի լույս համառորեն ճանապարհ բացող միլիոնավոր ծիլերը: Ինչ-որ շատ կարևոր ու զարմանալի բան էր կատարվում անտառում: Եվ դա կոչվում էր «Գարուն»: Այդ նրա, գարնան մասին էին երգում թռչունները: Կիրիկը պատահաբար հանդիպեց անտառի առվին: Այնտեղ, ուր ջուրը գլորվում էր քարերի վրայով, առուն ուռել էր թռչունի կոկորդի նման: Առուն երգում էր:

Եվ Կիրիկն էլ էր լցվում երգով: Նա արդեն չէր ուզում մոլորվել:

Սոճու կեղևին հանկարծ ինչ-որ բան պսպղաց ու մարեց: Եվ նորից պսպղաց: Դա եղնջաթիթեռն էր, որ բարկացնում էր նրան: Թիթեռը աչքով էր անում Կիրիկին, մեկ փակելով ու մեկ էլ բացելով իր թավշյա թևիկները. դե, կարող ես՝ բռնիր:

Կիրիկն ընկավ նրա հետևից: Վազում էր անտառային հեղեղատի ուղիղ եզերքով: Ա՛յ, հիմա կբռնի, այ... Եվ այստեղ նա զգաց, որ փափուկ հողը թեթև շարժվելով սահեց ոտքերի տակից: Նա բռնեց զառիթափի վրա աճած արոսիկից, բայց արոսիկն էլ նրա հետ սահեց, և Կիրիկը գլորվեց լանջն ի վար:

Նա ցավ չէր զգում, այլ վիրավորանք: Եվ բոլորի համար արոսիկն էր մեղավոր: Ինչո՞ւ արոսիկը չկարողացավ պահել նրան:

Կիրիկը ոտքի ելավ և զայրացած նայեց հողին ընկած արոսիկին:

Նա դեռ նոր էր արթնանում: Նրա կնճռոտված թերթիկները սեղմված էին պտղունցի պես: Միայն ծայրին բացվել էր մի թերթ, որ նման էր փետուրի:

Եվ Կիրիկը խղճաց ծառին:

— Հիմա ի՞նչ անեմ քեզ, — հարցրեց Կիրիկը և նայեց շուրջը:

Նրան թվաց, թե կանաչ խոտերը հետաքրքրասիրությունից կանգնեցին մատների ծայրերին: Ծառերը ուշադրությունը լարած օրորեցին գլուխները: Ամբողջ անտառն սպասում էր, թե ի՞նչ է անելու Կիրիկը:

— Թող այդպես էլ լինի, — ասաց Կիրիկը, արոսիկը դնելով ուսին: — Քո պատճառով պետք է տուն գնամ:

Դա ինքը չէր, որ ուզում էր տուն գնալ, այլ արոսիկը: Չէ՞ որ նա կչորանա, եթե չտնկեն:

Կիրիկը քայլում էր և լսում, թե ինչպես են իր թիկունքում ուրախ վժժում արոսիկի ճյուղերը: Բայց տունը մոտիկ չէր, և Կիրիկը հոգնեց: Նա ծառը դրեց մյուս ուսին: Եվ մյուս ուսն էլ հոգնեց:

Այդ ժամանակ նա արոսիկին իջեցրեց հողին և հենեց կոճղին:

Նա մենակ ավելի շուտ կհասնի: Այժմ ինքն է ուզում գնալ տուն: Իսկ արոսի՞կը: Թող չորանա,



իր ի՛նչ գործն է: Բայց մի քանի քայլ անելուց հետո Կիրիկը շրջվեց: Արոսիկը կանգնած էր այնպես բարակ, արևային պուտերով, կարծես թե պեպենոտ լիներ, և ասես կանչում է իրեն:

— Օ՜ֆ, էս էլ ինչ է պոչիցս կպել, — ճչաց Կիրիկը հուսահատությամբ: Բայց այնուամենայնիվ վերադարձավ: Նա արոսիկը տարավ մինչև տուն և թաքցրեց ցանկապատի մոտ, հաղարջի թփերում: Երբ Կիրիկը դուրս եկավ թփերից, տեսավ շեմքին կանգնած հորը:

* * *

— Դու որտե՞ղ ես կորել, — հարցրեց հայրը: — Արդեն անհանգստանում էինք:

Օհո՜: Նրանք այնուամենայնիվ նկատել են, որ ինքը երկար ժամանակ չկար:

— Օ՜հ, կեղտոտվել ես, — ճչաց մայրիկը: — Եվ ոտքերդ էլ թաց են: Շուտ արա շորերդ հանիր՝ մաքրեմ:

Եվ մայրիկն սկսեց շփել Կիրիկի ոտքերը: Ուրե-

մին նա այնուամենայնիվ սիրում էր իրեն, թե-կուզ ինքը տան ամենափոքրը չէր և ամբողջովին ցեխոտված էր։ Իսկ երբ Կիրիկը չորացավ և տաքացավ, մայրիկը նրան տարավ ննջարան։

— Գնանք, ծանոթացիր քույրիկիդ հետ։

Մայրիկի մահճակալին վարդագույն կոֆտայով ու գլխաշորով պառկած էր ինքը՝ այդ Իրան։ Կիրիկը պարզապես անհարմար զգաց, երբ տեսավ նրա փոքրիկ մատիկները։ Բոլորովին անճարակ, ինչպես արտուկի այն կնճռոտված ճյուղերը։ Մի՞թե նրանք կարող էին որևէ բան կտրել։ Նրա գլխարկը թեքվել էր, և գլխին ոսկուն էր տալիս աղվամազը։ Այնուամենայնիվ նա մազեր ունեցել է, միայն հայրիկը չի նկատել։

Վերմակի վրա ընկած էր պլաստմասսայե չխկչխկանը։

— Ինչո՞ւ նա չի խաղում չխկչխկանով,— տխուր հարցրեց Կիրիկը։

— Չի կարող ձեռքով բռնել,— պատասխանեց մայրիկը։— Նա դեռ փոքր է, ոչինչ չի կարող անել, ոչ քայլել, ոչ կանգնել, ոչ նստել։

Իսկ Միշան ասում էր, որ նա կնստի Կիրիկի գլխին։

— Ճաղակրատ ու անատամ,— բարձրաձայն ասաց Կիրիկը։

— Դու այդ ո՞ւմ ես ասում,— զարմացավ մայրիկը։

— Ես գիտեմ, թե ում։

Եվ հանկարծ Իրայի ամբողջ երեսը ճակատից մինչև ծնոտը կնճռոտվեց, և նա լաց եղավ։ Պարզ է, նա լաց է լինում նրա համար, որ չի կարող վերցնել չխկչխկանը։ Իսկ ինքը ամեն ինչ կարող է. և՛ վազել, և՛ թռչել։ Մի անգամ նույնիսկ բարձրացավ ցանկապատը...

— Մայրիկ, ես կարո՞ղ եմ...— արագ ասաց Կիրիկը։— Եվ սկսեց թափ տալ չխկչխկանը Իրայի երեսի դեմ։

Իրայի աչքերը նայում էին հայտնի չէ, թե ուր։ Նա լացը կտրեց, և նրա շրթունքների անկյունները ձգվեցին։

— Կարծես թե ծիծաղում է,— ասաց մայրիկը։— Իրան ճանաչեց Կիրիկին։ Զգում է, որ իր մեծ եղբայրն է, իր պաշտպանը։

— Հը՞մ,— մռռաց Կիրիկը։

— Իհարկե, այդպես է,— մյուս սենյակից արձագանքեց հայրիկը։— Միայն թե մի քիչ աչքածակ է։

— Թող, Արկադի,— ասաց մայրիկը։— Բանն այն է, որ Կիրիկն ուզում է, թող քնի իր մահճակալին։ Մենք Իրայի համար օրորոց կառնենք։

— Ինչո՞ւ օրորոց,— ասաց Կիրիկը.— ինձ համար բազմոցը նույնիսկ շատ լավ է։

Եվ նա թեքվեց դեպի մայրիկը։ Նա էլի իր մայրիկն է։ Նույնիսկ ավելի է մայրիկ, քան առաջ։ Իր և Իրայի։

— Դու այդ ո՞ւր,— անհանգստացավ մայրիկը, տեսնելով, որ Կիրիկը վերցնում է վերարկուն։

— Ես մի քայլեմ։

Պարզապես նրան միանգամայն անհրաժեշտ էր տեսնել Միշային։

* * *

Նա շատ շուտ վերադարձավ և բերեց ատրճանակը։ Երբ ներս մտավ, հայրն ասաց.

— Ինձ թվում է, թե դու անտառից ծառ ես բերել։— Գնանք տնկենք քանի դեռ չի մթնել։

Երբ նրանք փորում էին հողը, ցանկապատի ետևից նրանց հետևում էր Միշան։ Նա սպասում էր, որ Կիրիկը կնկատի իրեն, բայց չստացվեց։ Ստիպված խոսեց ինքը.

— Էդ ի՞նչ է, արոսի՞կ է։

— Արոսիկ է,— պատասխանեց հայրը։

— Իրինա-արոսիկ,— ավելացրեց Կիրիկը։

Եվ բոլորը ծիծաղեցին։

— Ուզում ես Միրոնովներին նմանվե՞լ...

— Ինչ գործ ունեն այստեղ Միրոնովները։

Երևի Կիրիկն իսկապես մեծացել էր այս շաբաթում։ Նա Միշայի հետ խոսում էր ինչպես հավասարի հետ։ Ընդհակառակը, հիմա Միշան նույնիսկ հաճոյանում էր նրան.

— Միրոնովները, հենց որ ընտանիքում մեկը ծնվում է, մի ծառ են տնկում։ Նրանք արդեն մի ամբողջ այգի ունեն։

— Եվ մենք էլ այգի կունենանք,— պարծենում էր Կիրիկը։

Արևը մայր էր մտնում։ Ձյան վրա ավելի էին կարմրում բացվարդի ծիլերը։ Կարծես թե դա թուփ չէր, այլ բույն, որտեղից արագիլները հանում են իրենց կարմիր կտուցները։

Ճանապարհի ավազը վարդագույն էր դառնում։

Երկու տղամարդ կանգնել էին վարդագույն ճանապարհին և նայում էին այգում հայտնված նոր ծառին։ Նա դեռ մերկ էր, նրա կատարին միայն մի տերև էր դողում, բոսոր ու խամրած, ինչպես թռչունի փետուր։

Թարգմ. ՄԱՐԻԱ ՀԱԿՈԲՅԱՆ





## ԻՄ ՄԱՆԿԻԿԻՆ՝ ԱՐՓԵՆԻԿԻՆ

Դու իմ երկրի նման եղիր՝
Բարձր ու վսեմ, բորբ ու գերող.
Դու իմ երկրի նման եղիր՝
Շեն ու երգուն, նաև ներող,
Դու մեր մտքի նման եղիր՝
Ե՛վ արևուն, և՛ համբերող։

Եթե երկրի նման իմ վեհ
Ուշ հուրհուրա բախտդ, բալի՛կ,
Դու իմ երկրի նման վսեմ
Սիրտդ մղիր դեպի՛ գալիք,
Մեր տենչերի նման դու սեգ
Դարձիր ամպրոպ ու արհավիրք...

Ա՜խ, դու երկրիս նման եղիր՝
Բարձր ու՛ անհաս, մեղմ ու կարող,
Ա՜խ, դու՛ երգիս նման եղիր՝
Լցված խոհով ու քանքարով,
Մեր մրգերի նման եղիր՝
Լիքը՝ բերքով, դարով, բարով...

Դու մեր երկրի նման եղիր՝
Բարձր ու վսեմ, բորբ ու բերող,
Դու մեր երգի նման եղիր՝
Արհամարհող, նաև ներող,
Դու մեր մրգի նման եղիր՝
Արևաբաղձ և համբերող...

Եթե երկրի նման իմ վեհ
Ուշ հուրհուրա բախտդ, բալի՛կ,
Դու իմ երգի նման վսեմ
Տենչա չքնաղ բախտ ու գալիք,
Մեր տենչերի նման դու սեգ
Ըղձա ամպրոպ ու արհավիրք։

Իմ դուստր, Արփենիկ,
Սիրիր հանճարը հայ,
Որ դարեր շարունակ մաքառել է,
Եվ իբրև իր փառքը վերջին՝
Քո հորն է լույս աշխարհ բերել։



## ՆՈՒՆԻԿԻՆ

Նունիկն ունի բարակ մատներ,
Նրբին ոտներ,
Շարմաղ նազանք,
Բարձրիկ հասակ։
Օրիորդ Նոնա ասենք նրան,
Ծաղկեպսակ հյուսենք վրան...

*1936 թ. Ծաղկաձոր*

## …ՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ

(…են առաջին անգամ)

### ԱՐՓԻԿԻՆ

Երբ մեծանաս, կարդա այս գիրքն, իմ անգին,
Որ հասկանաս խնդությունը իմ կյանքի,
Որ իմանաս, թե ինչով եմ եղել ես
Իմ օրերում, թե ինքնուրույն և թե մեծ։

Գլխավորը սա՛ է, մանկիկ իմ լուսե,
Մնացածը միայն լեգենդ է մի սև...

1923 թ.

### ՕՐՈՐՈՑԻ ԵՐԳ

(Թարգմանություն)

Քնի՛ր, մանկի՛կ, թող որ ես էլ
Քուն քաշեմ մի քիչ։
Հայրդ բանվոր է հասարակ,
Մայրդ գեղջկուհի։

Շատ ենք, շատ ենք մենք տառապել
Հին կյանքի փոսում։
Քնի՛ր, մանկի՛կ, անհո՛գ ննջիր,
Օրոր եմ ասում։

Ծանր էլ ապրում ժողովուրդը.
Միշտ ննշում ու լաց։
Հայրդ ազատ կյանքի համար
Կռվելու գնաց։

Բայց վերջ կգա տառապանքին
Ամբողջ աշխարհում.
Բոլոր մարդիկ կապրեր հանգիստ,
Օրոր եմ ասում։

1922 թ.

### ԲԱԼԻԿԻՍ

Մանկի՛կս, մանկի՛կս,
Մանկի՛կ անգին,
Մենք ո՞նց կյանքում այս
Հաղթենք կյանքին...
Կյանքում պայքար է,
Չկա հանգիստ,
Պարտվեց քո հայրը,
Մանկիկ անգին...

1934

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ




Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

ԻՍՐԱՖԻԼ ՄԱՄԵԴՈՎ

Խաթիրան սովորում էր հինգերորդ դասարանում: Առափնյա փողոցի բնակիչները սիրում էին այդ աշխույժ, խելացի աղջըկան:

Ուսուցիչ Իլհամը աշխատանքից հետո իր փոքրիկ հարևանուհուն հաճախ էր տեսնում իրենց տանը ու հետը զրուցում: Նա այդ այցելությունների համար շատ էր ուրախանում, չնայած գիտեր, որ ուր որ է, այդ հարցասեր աղջիկը մի նոր «դժվար հանձնարարություն» պետք է տա իրեն:

Թող «դժվար հանձնարարություն» բառերը ձեզ չզարմացնեն: Իսկապես, Խաթիրան հետաքրքիր բնավորություն ուներ. նա խոսում էր քիչ, բայց խելացի, աշխատում էր ամեն առիթով մի նոր բան սովորել: Իլհամենց տանը նա զրուցում էր՝ գրքերում, թերթերում իր կարդացածի, երաժըշտության մասին, հետո էլ մի այնպիսի «տարօրինակ» հարց էր տալիս, որ ուսուցիչն ստիպված էր լինում զրույցը հետաձգել, Խաթիրային ճանապարհելուց հետո, մինչև ուշ գիշեր իր գրքերում ու տետրերում որոնել այդ հարցի պատասխանը:

Իլհամենց ընտանիքը նոր բնակարան փոխադրվեց, և երկար ժամանակ էր, ինչ Խաթիրան նրանց չէր այցելում: Մի օր էլ Իլհամը Խաթիրային նորից տեսավ իրենց տանը: Նա փոքրիկին ողջունեց ու մտածեց. «Տեսնես այս անգամ ի՞նչ հարց է տալու»: Խաթիրան, առանց ուսուցչի մտքերը կռահելով, բացեց պայուսակը, հանեց աղավնիների գունազարդ նկարներ ու թափեց սեղանին: Իլհամը վերցրեց նկարներից մեկը և խորասուզվեց մտքերի մեջ. պիոներական փողկապով մի սևաչյա, ծամավոր աղջիկ, աջ ձեռքին աղավնի բռնած՝ թռցնում էր: Լռությունը խախտեց մինչ այդ ուսուցչի շարժումներին ուշադրությամբ հետևող Խաթիրան.

— Շնորհակալություն:

Ուսուցիչն ուզում էր հարցնել, թե ինչի համար է Խաթիրան շնորհակալություն հայտնում, բայց վերջինս շարունակեց.

— Գիտե՞ք, մեր դրուժինայում մրցանակաբաշխություն է հայտարարվել. «Խաղաղության աղավնի» լավագույն նկարը տպագրվելու է «Պիոներ» ամսագրում: Եկել էի խնդրելու, որ դուք օգնեք իմ նկարներից ընտրելու ամենալավը: Առանց խնդրելու էլ դուք ընտրեցիք իմ հավանածը:

— Իսկ այս Ռոզատի Էնրիկո՞ն ով է, — հարցրեց Իլհամը աղավնու կտցի ծրարին գրված հասցեն կարդալուց հետո:

Խաթիրան նորից ձեռքը տարավ պայուսակը հանեց խնամքով փաթաթած մի թուղթ և մեկնեց ուսուցչին.

«Պարոն պրեզիդենտ: Երբ հայրս պատմում է անցած պատերազմի մասին, սարսափից սիրտս քիչ է մնում պայթի: Ես մտածում եմ ռազմաճակատից չվերադարձած հայրերի, նրանց որբացած երեխաների մասին: Այս նամակն էլ հենց նրա համար եմ գրում, որ դուք պատերազմական պայմանագրեր չստորագրեք, որպեսզի հայրս միշտ ինձ և մայրիկիս հետ լինի:

ՌՈԶԱՏԻ ԷՆՐԻԿՈ

Պերուջա, Իտալիա»:

Թերթից կտրված նամակը կարդալուց հետո Իլհամը այն վերադարձրեց Խաթիրային: Վերջինս մի պահ լուռ մնաց, իսկ այնուհետև փափլիկ մատիկները սեղանին բախելով, ասաց.

— Այ, այստեղ Էնրիկոյի նամակը կտամ, այս կողմին՝ աղավնու նկար, իսկ նկարի տակ՝ մեր դրուժինայի պատասխանը:

Իսկ ձեր նամակում ի՞նչ եք գրելու:

Գրելու ենք, թե՝ թռի՛ր աղավնի, թռի՛ր, Էնրիկոյին ասա, որ ինքը մենակ չէ, որ խաղաղություն են ցանկանում բոլոր երեխաները: Ծնողները քաղցր են բոլորի համար: Պրեզիդենտին հղած նամակը մենք էլ կարդացինք թերթում: Մեր

դրուժինայի կողմից քեզ քաջառողջություն ենք մաղթում...

Իրինան խորասուզվել էր մտքերի մեջ։ Նա վերհիշեց մահասփյուռ պատերազմի տարիները, փոքրիկ Թոֆիկին, որի հետ ծանոթացել էր Օդեսայի ակնաբուժական հիվանդանոցում...

— Ի՞նչ ես մտածում,— լսվեց Խաթիրայի սթափեցուցիչ ձայնը։

— Ոչինչ, Խաթիրա, քո այս էսքիզն ինձ հիշեցրեց Թոֆիկին.

— Իսկ Թոֆիկն ո՞վ է։

Իրինան սկսեց մանրամասն պատմել.

...1941 թվականի հունիսի 22-ն էր։ Ժիտոմիրի մարզի սահմանամերձ գյուղերից մեկում առավոտվանից թեժ կռիվներ էին մղվում։ Երբ մութն ընկավ, հրաձգությունը դադարեց։ Արազը, որ զինվորական ծառայության մեջ էր այդ վայրերում և ընտանիք էր կազմել, որոշեց օգտվել դադարից ու մի քանի րոպեով տեսնել կնոջն ու երեխային։ Բայց, ավա՜ղ... Իր տան տեղում նա գտավ միայն ռումբի պայթյունից առաջացած մի մեծ փոսորակ։ Արազը չտեսավ ո՛չ Վերա Պավլովնային, ո՛չ էլ փոքրիկ Թոֆիկին։ Հանկարծ նա լսեց կրակոցի ձայներ և շտապեց դեպի կրակի գիծը։ Փոսորակից նոր էր հեռացել, երբ թշնամու գնդակը նրան գետին տապալեց։ Արազը դժվարությամբ գլուխը բարձրացրեց, շուրջը նայեց։ Ֆաշիստ ավտոմատավորներին տեսնելով, նա գրպանից հանեց փաստաթղթերը և թաքցրեց հողում։ Այնուհետև վիրավորված ձեռքով հանեց նռնակի ապահովիչը և նետեց իրեն մոտեցող թշնամիների կողմը։ Երբ պայթյունից առաջացած փոշին ցրվեց, ֆաշիստները անշարժ փռված էին գետնին։ Բայց զոհվել էր նաև Արազը։

Վերա Պավլովնան պատերազմի տարիներին փոխադրվեց Միջին Ասիա։ 1946 թվականին որդու Թոֆիկի հետ վերադարձավ իր ծննդավայրը։ Հօդս ցնդած տան տեղը նոր տուն կառուցեցին։ Թոֆիկն արդեն մեծ տղա էր։ Նա շարունակ հետաքրքրվում էր հոր ճակատագրով, բայց տեղեկություն ստանալ չէր կարողանում։

1949 թվականի մայիսյան մի օր Թոֆիկն ընկերների հետ դաշտ գնաց խաղալու։ Նրանք հողը փորում, «ջրանցքներ» էին կառուցում։ Հանկարծ երեխաներից մեկի փորիչը դեմ առավ ինչ-որ բանի։ Նա հողից հանեց մի քանի խունացած թուղթ և բարձրաձայն կարդաց նրանցից մեկի վրայի հազիվ նշմարելի բառերը «Ավագ լեյտենանտ Արազ Ռաշիդ օղլի Ռասուլով»... Այդ անունը լսելով, ընկերների կողմից «Սևուկ» մականունն ստացած Թոֆիկը գունատվեց, սփրթնեց։ Նա խելակորույս մոտեցավ ընկերոջը և ձեռքից խլեց թղթերը...

Այդ օրվանից Թոֆիկը հանգիստը կորցրեց։ Դասերից հետո նա շրջում էր այն վայրերում, որ գտնվել էին հոր փաստաթղթերը։ Հոր ուրվականը խլել էր նրա քունը։ Մի օր իրիկնադեմին նա կրկին գնաց դաշտ, երկար շրջելուց հետո մոտեցավ մի հողաթմբի և մի պահ մտածելով, թե գուցե հենց դա է հոր գերեզմանը, ծունկ չոքեց։ Լսվեց մի պայթյունի ձայն, և Թոֆիկը գիտակցությունը կորցրած փռվեց գետնին։ Պատերազմի տարիներից մնացած ական էր դա... Թոֆիկը կուրացավ զույգ աչքով։ Շատ չանցած, նրան տեղավորեցին Օդեսայի ակնաբուժական հիվանդանոցում։

Մեկ տարի էր, ինչ Թոֆիկը բուժվում էր։ Պրոֆեսորը ժամերով չէր հեռանում նրանից, զրուցում էր, պատմում խիզախ, ուժեղ կամքի տեր մարդկանց մասին։

— Արդյոք, ես երբևէ կտեսնե՞մ, ձեռքս գիրք կառնե՞մ,— մի օր ասաց Թոֆիկը պրոֆեսորին։— Մայրս էլ չի կարողանում գտնել հորս նկարը։ Ասենք, որ գտնի, ի՞նչ օգուտ։ Ես նրա դեմքը տեսնել չեմ կարող...



Պրոֆեսորն ամեն ինչ անում էր երեխայի տեսողությունը վերադարձնելու համար։ Նա բարոյապես էլ օգնում էր փոքրիկ հիվանդին։ Նամակ գրեց սովետական բանակի գլխավոր հրամանատարությանը և խնդրեց ուղարկել նախկին սպայի նկարը։ Հիվանդանոցից ոչ հեռու գտնվող դպրոցի աշակերտներն ամեն օր այցելում էին Թոֆիկին, իրենց օրվա դասերը պատմում նրան։ Թոֆիկը բազմաթիվ նամակներ էր ստանում տարբեր տեղերից։ Մի երեխա գրում էր. «Սիրելի Թոֆիկ, բո-

լորովին մի՛ հուսահատվիր։ Մենք լսել ենք, որ պրոֆեսորն ամեն ինչ անում է, քեզ բուժելու համար։ Նրան ասա, որ եթե հնարավոր է, իմ մի աչքը պատվաստեն քեզ։ Եթե դա հնարավոր չլինի, ապա դարձյալ մենք քեզ չենք թողնի։ Ծնողներս համաձայնել են, որ քեզ բերենք մեր տուն։ Ես քեզ ամեն օր կտանեմ դպրոց, դասերը միասին կսովորենք, ամեն ինչում քեզ կօգնեմ»։ Այսպիսի նամակներ շատ էին ստացվում։ Թոմիկը շրջապատված էր հոգատար մարդկանցով։ Բայց

## ԿԱՆԱՉ ՏՈՂԱՆ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Սուր գլխիկները
Սանրել, արդուկել,
Սեգ նոճիները
Կազմել են շարքեր։
Այնքան մաքուր են,
Հարազատ են քեզ,
Ուզում ես ձեռքով
Գուրգուրես, գրկես։
Նրանք ճամբարի
Պահակն են կանաչ,
Զարթնում են շատ վաղ,
Լույսից էլ առաջ։
Պիոներներից են
Սովորել նրանք
Կանգնել տողանի՝
Մեղմ նվագի տակ։

## ՊԱՏԿԵՐ

ՎՐԵՍ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Արևը լեռան թիկունքից
Գլորվեց ու ընկավ ձորը։
Աղբյուրի վճիտ ակունքից
Ջուր խմեց ու թռավ լորը։
Արևի համբույրից այրող,
Կարկամեց կակաչը կարմիր։
— Հերի՛ք է թափառես, ա՛յ հով.
Շշնջաց գետակը.— կանգնի՛ր։
Ու մի պահ իջավ լռություն,
Ցողաշաղ ձորերի վրա,
Ինչ-որ տեղ կանչում էր կկուն,
Արևը լսում էր նրան։

ամենանշանավոր աչքերի պրոֆեսորն էր։ Նա արդեն վիրահատել էր իր փոքրիկ հիվանդի աջ աչքը, բոլորն անհամբեր սպասում էին այն օրվան, երբ կարելի կլինի հանել վիրակապը։

Եվ այդ բաղձալի օրը եկավ։

Հմուտ վիրաբույժն ինքն էր եկել վիրակապն արձակելու։ Դողացող ձեռքերով վիրակապը հեռացնելով հիվանդի գլխից, նա ասաց.

— Թոմիկ, մի՛ վախենա, աչքդ բաց արա։

Հիվանդը դժվարությամբ շարժեց կոպերը, բայց ոչինչ տեսնել չկարողացավ։ Շուրջը կիսախավար էր, ասես մշուշի ծածկ ընկած լիներ։ Դիտավորյալ կերպով սենյակը թույլ էր լուսավորված։ Բոլորը հայացքները հառել էին մի կետի՝ Թոմիկի աջ աչքին։ Նրանք գիտեին, որ թերևս հնարավոր կլինի բուժել միայն այդ աչքը։ Պրոֆեսորը ձեռքով նշան արավ, և պատուհանի սև վարագույրն աստիճանաբար բարձրացվեց, սենյակը լուսավորվեց։ Հանկարծ լսվեց մի ճիչ.

— Հայրի՛կ։

Թոմիկը ձեռքին բռնած ծրարից հանեց հոր նկարը, նախ մոտեցրեց աչքին, հետո շրթունքներին...

Պրոֆեսորն ուզեց հանգստացնել հուզված երեխային, բայց նրա ձայնը դողաց։ Ծեր գիտնականը միայն կարողացավ աչքերի արցունքը թաքցնելով, գրկել նրա գլուխը, սեղմել կրծքին ու համբուրել...

Իկրամը վերջացրեց իր պատմությունը։ Լռություն էր տիրում։ Խաթիրայի արտասվակալած աչքերը գետնին էին նայում։ Նկատելով իր փոքր բարեկամուհու հուզմունքը, Իկրամը խախտեց լռությունը։

— Խաթիրա, այս բանը կարելի՞ է մոռանալ։

Խաթիրան պատասխանել չկարողացավ։ Նա խոշոր սև աչքերը սրբելով, գլխի շարժումով հասկացրեց, որ այդ սրտաճմլիկ պատմությունը երբեք մոռանալ չի կարելի։ Ապա նա սթափվեց և ասաց իր ուսուցչին.

— Խնդրում ենք օգնեք, որ Էնրիկոյին ուղարկվող մեր պատասխան նամակում Թոմիկի մասին էլ գրենք։

Իկրամը կատարեց Խաթիրայի նաև այս «հանձնարարությունը»։ Նրանք գրեցին.

«Թռի՛ր, աղավնի, թռի՛ր, արար աշխարհին հաղորդիր, որ Էնրիկոյի նման միլիոնավոր երեխաներ ցանկանում են լսել իրենց մայրերի օրորը, միշտ զգալ հայրական փաղաքշանք, որ ոչ ոք չի ցանկանում Թոմիկի նման կուրանալ, որոնել իր հոր անհայտ գերեզմանը։ Ասա, որ եթե մեր հայրերն ու մայրերը, եղբայրներն ու քույրերը միավորեն իրենց ջանքերը, ապա պետությունները իրենց համար կկազմեն մի նոր բառարան, որի առաջին բառը կլինի՝ «Խաղաղություն»։

Ադրբեջաներենից թարգմանեց՝ Գ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ՄԱՐՏՆՉՈՂ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ



Վիետնամի վրա գիշեր-ցերեկ պայթում են ռումբերը, ահարկու սուլոցով գետնի մեջ են խրվում ամերիկյան հրթիռները։ Երկնքում բռնկվում ու փայլատակում են զենիթային արկերը, և հաճախ քարի պես ներքև են ընկնում խփված ինքնաթիռները։

Այդպիսի պատերազմ դեռ չի եղել, թշնամին սիրտ չի անում մտնել ուրիշի հողը և ռմբակոծում է օդից։

Երբ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոնսոնը ազդարարեց Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի ռմբակոծության մասին, ամերիկյան բոլոր թերթերը գրեցին, որ մի քանի օրում ամեն ինչ կվերջանա։ Բայց նրանց հաշիվները սխալ դուրս եկան. արդեն ամիսներ են անցել, իսկ ամերիկյան ռազմամոլները չեն կարողանում ընկճել հայրենասեր վիետնամցիներին։

Եվ մինչև այսօր Վիետնամում կռիվը դեռ մղվում է երկնքի ու երկրի միջև։ Սովետական լրագրող Յուրի Ժուկովը, որն իր սեփական աչքերով տեսել է այդ գործողությունները, գրում է. «Որքան էլ որ ամերիկացիները ինքնաթիռ, տանկ, թնդանոթ ու զարկ են ուղարկում Վիետնամ, կատաղի ու լարված կռիվների ընթացքում, ամեն տեսակի տառապանքների մեջ, փոքրիկ այդ երկրի ժողովուրդը ցուցաբերում է կամքի զարմանալի տոկունություն և մեծ հավատ իր հաղթանակի նկատմամբ»։

Վիետնամի ժողովուրդը անզիջում վճռականությամբ իր սոցիալիստական հայրենիքն է պաշտպանում օտարերկրյա նվաճողներից։

# Մ Ո Ր Խ Ն Դ Ի Ր Ք Ը

*ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ*

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

*Գյուղը նրանք գրավեցին կեսօրին։*

*Արևը երկնքից կրակ էր թափում։ Բանանի խոշոր ողկույզները կարծես եգիպտացորենի կողրեր էին՝ կրակի վրա խորովվող։*

*Մինչ այդ. բրինձի դաշտերով շրջապատված գյուղում կատարյալ լռություն էր տիրում։ Բնակիչները դեռ առավոտյան, թողնելով իրենց տուները, գնացին դեպի ջունգլիի խորքերը, ուր թշնամու զորքերը թափանցել չէին կարող։*

*Մնացել էին մի քանի ծերեր։*

*Նվաճողները երկար ճամփա էին անցել, հոգնած էին, քրտնած, փոշոտ։*

*Միանգամից գյուղը լցվեց անծանոթ ձայներով, աղմուկով։*

*Լքված խրճիթներից մեկի մոտ դրված էր ջրով լի տակառ։ Զինվորներից մեկը, անջատվելով ընկերներից, գնաց դեպի այդ տակառը։ Նրա ընկուզագույն բլուզի մեջքն աղակալել էր։ Զինվորական լայնեզր գլխարկի տակից քրտինք էր ծորում։ Նա ցանկանում էր շտապ ջուր խմել ու հասնել իր ընկերներին։ Խրճիթի մոտ նա զգուշությամբ շուրջը նայեց, ապա կռացավ տակառի վրա։*

*Եվ հենց այդ պահին, ասես գետնի տակից, նրա մոտ հայտնվեց մի պառավ կին և ձեռքի շարժումներով արգելեց զինվորին ջուր խմել։ Նա այնպես էր բռնել տակառի բերանը, որ կարծես ցանկանում էր ասել՝ այս ջուրն իմն է, չեմ թողնի խմես։*

*Օտարազգի զինվորը վիետնամական գյուղերում այդպիսի ծեր կանանց շատ էր հանդիպել։ Նրանք այնքան սմքած են ու վտիտ, որ թվում է, եթե փչես՝ կընկնեն գետնին։ Մի՞թե այս պառավը մտադիր է կռվի բռնվել ավտոմատով ու սվինով զինվորի հետ։*

*Արհամարհանքով ու չորությամբ նայելով պառավին՝ զինվորը գոռաց.*

*— Հեռացի՛ր, քանի կենդանի ես։*

*Ծեր կինը նրան չհասկացավ. բացի մայրենի լեզվից նա ուրիշ լեզու չգիտեր։ Այդ լեզվով էլ նա ասաց.*

*— Ո՛չ, մի՛ խմիր այս ջուրը։*

*— Հեռացի՛ր, պառա՛վ, վատ կլինի,—նորից գոռաց զինվորը։*

*— Ո՛չ, չե՛մ թողնի։*

*Զինվորն էլ նրան չէր հասկանում։ Զայրանալով, նա պառավին հրեց, գլորեց գետնին։ Բայց վիետնամուհին իսկույն ոտքի կանգնելով, նորից զինվորին արգելեց ջուր խմել։*

*Եվ, ով գիտե, ինչով կվերջանար այդ ընդհարումը, թե այդ պահին չհայտնվեին երկու ուրիշ զինվորներ, որոնցից մեկն ազատ բացատրվում էր տեղացիների հետ։ Վիետնամուհու հետ ընդհարվող զինվորը դիմեց ընկերոջը.*



— Չեմ հասկանում, ի՞նչ է ուզում այս վհուկը:

Նրան թարգմանեցին.

— Պառավն ասում է՝ այդ ջուրը խմել չի կարելի, կհիվանդանաս, մի-բոպե համբերիր, ինքը խմելու մաքուր ջուր կբերի:

Զինվորը դեռ չէր հավատում իր ականջներին, մերթ նայում էր պառավին, մերթ իր ընկերոջը:

Ծեր կինը գնաց, խրճիթից ջուր բերեց, լցրեց բաժակը, տվեց զինվորին.

— Սա եռացրած ջուր է,— բացատրեց նա,— Հո Շի Մինն ասել է՝ խմեք միայն եռացրած ջուր, որպեսզի չհիվանդանաք:

Զինվորը դիմեց թարգմանչին.

— Ես նրան հրեցի, թող նա ների ինձ:

Ծեր վիետնամուհին մեծահոգորեն ասաց.

— Նա ինձ չէր հասկանում, թող խմի, մաքուր ջուր է:

Եվ որպեսզի զինվորը չկասկածի, նա սափորից լցրեց բռան մեջ, առաջ ինքը խմեց:

Նրա օրինակին հետևելուց հետո զինվորը մեղավորի պես նորից դիմեց ծեր կնոջը.

— Ես ցանկանում եմ քավել իմ մեղքը...

Ավտոմատը գետնին դնելով, նա գրպանից հանեց մի թղթադրամ:

Կինը հրաժարվեց դրամից:

— Ապա ի՞նչ լավություն անեմ, ի՞նչպես քավեմ իմ մեղքը,— զարմացավ զինվորը,— նա ինձ հետ վարվեց ինչպես մայր: Թող ասի, ի՞նչ լավություն անեմ:

Ծեր վիետնամուհին պատասխանեց.

— Ո՞ր երկրից է նա եկել. եթե ցանկանում է ինձ լավություն անել, ասա թող վերադառնա տուն, իր հայրենիքը, իր հարազատների մոտ: Ուրիշ բան ես չեմ ցանկանում:

Տեսնելով, որ զինվորը մտածում է իր պատասխանի վրա, վիետնամուհին ավելացրեց.

— Ես երկու տղա ունեմ և երբեք թույլ չեմ տա, որ նրանք գնան ուրիշի երկրում կռվեն, ուրիշների տներն ավերեն:

Հեռվում լսվում էր ավտոմեքենաների աղմուկ: Ծարավը հագեցրած զինվորը հեռացավ այդտեղից գլխահակ, խորասուզված մտքերի մեջ:

# ԹԻԹԵՌՆԻԿԸ

*(Վիետնամական հեքիաթ)*

Կար-չկար, մի համարձակ ու խիզախ պատանի կար, Նոկ-Ֆան-Ֆի անունով: Նրա ծնողներն աղքատ էին: Նրանք ոչինչ չունեին բրնձի դաշտի փոքրիկ հողակտորից բացի, և մի կտոր հացի համար առավոտից երեկո աշխատում էին կալվածատիրոջ մոտ:

«Այսպես են ապրել մեր պապերը, այսպես էլ թոռները իրենց մեջքերը կկռացնեն ուրիշի դաշտերում», —թախիծով մտածում էր Նոկ-Ֆանը:

Երեկոները նա գնում էր ջունգլի: Այնտեղ՝ լիանաների արանքներում, ժայռերի ճեղքերում Նոկ-Ֆանը գանձ էր որոնում: Բայց գանձի փոխարեն նրան հանդիպում էին միայն կծիկ դառած օձեր, քնած մկներ և կիրճերի մեջ կարկաչող աղբյուրներ:

Պատանին տուն էր վերադառնում հոգնած ու չարացած: Երբ Նոկ-Ֆանը լսեց, որ խիզախ մարդիկ պայքար են սկսում կալվածատերերի դեմ, նա միայն ուսերը թոթվեց և արհամարհանքով ժպտաց. «Ի՞նչ կարող եք անել դուք, թույլ, անպաշտպան մարդիկդ: Սպասեք, ես մենակ անհամեմատ ավելին կանեմ: Միայն թե հաջողվեր ինձ գանձ գտնել»:

Եվ նա մարդկանցից մի կողմ քաշվեց ու սկսեց մտածել միայն մտքինը կատարելու մասին։

Մի անգամ Նոկ-Ֆանը մի մեծ թիթեռ տեսավ։ Թիթեռը մեկ նստում էր ծաղկի վրա, ասես սպասելով, թե երբ մարդը կմոտենա իրեն, մեկ բարձրանում էր ու թռչում հեռու։ Կարծես նա Նոկ-Ֆանին ինչ-որ տեղ էր կանչում։

Հետևելով թիթեռին, պատանին մոտեցավ մի ժայռի և դրա ճեղքվածքում մի նեղ անցք տեսավ։

Նոկ-Ֆանը կտրեց մի բամբուկ, վառեց այն և լուսավորելով իր ճանապարհը սկսեց սողեսող առաջ գնալ։

Անցքի հատակը շեշտակի իջնում էր ցած։ Բամբուկը վառ բոցկլտում էր, և բոցի կարմիր արտացոլման տակ Նոկ-Ֆանը քարե պատերին տեսավ ինչ-որ խորհրդավոր նշաններ։ Նրա սիրտը սկսեց արագ խփել։ Նա համոզված էր, որ վերջապես գանձ է գտել։

Երբ բամբուկե ջահն այրվեց մինչև վերջ, Նոկ-Ֆանը մնացած ճանապարհը գնաց սայթաքելով ու խարխափելով։ Երկար թափառեց նա մթան մեջ։ Մեկ-մեկ նրան թվում էր, թե լսում է ինչ-որ մեկի թեթև քայլերի ձայնը, շշուկը և մեղմ ծիծաղը։ Բայց բավական էր կանգներ, և ամեն ինչ լռում էր։

Տանջված Նոկ-Ֆանը վայր ընկավ գետնին ու քնեց։

Նա արթնացավ մի թեթև հովի հպումից։ Նրա վրա թեքվել էր դեղին հագուստով մի աղջիկ, հովհարը ձեռքին։ Նոկ-Ֆանին թվաց, թե ինչ-որ տեղ արդեն տեսել է նրան։ Այո, ինչպես չէ, ախր դա այն թիթեռ-աղջիկն է, որը հրապուրելով բերեց իրեն այստեղ։



Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Նոկ-Ֆանը վեր կացավ ու քայլեց աղջկա հետևից։ Մութը նոսրացավ, առջևում կայծկլտում էր երկնագույն լույսը։ Այդ քարանձավի ելքն էր։ Եվ ահա պատանու հայացքի դեմ բացվեց մի ծաղկազարդ հովիտ. հասուն բրնձի դաշտեր, պտուղների ծանրության ներքո կռացած ծառեր։ Երբ նա անցնում էր մարդկանց կողքով, մարդիկ ողջունում էին նրան թեթև ժպիտով։ Բոլորը շարժվում էին ծուլորեն ու դանդաղ։

— Որտե՞ղ ենք մենք,— հարցրեց Նոկ-Ֆանն աղջկան։

— Ստորերկրյա թագավորությունում,— պատասխանեց նա,— դու այստեղ երջանիկ կլինես։

— Այստեղ ամեն ինչ այնպես է, ինչպես երկրի վրա. ծառերը պտուղ են տալիս, բրինձը հասկավորվում է, ծաղիկները ծաղկում են...

— Այո, բայց այստեղ ժամանակ գոյություն չունի, դրա համար էլ ոչ ոք ոչ մի տեղ չի շտապում։ Այստեղ մարում են բոլոր ցանկությունները ու ձգտումները, և ի՞նչ ցանկանալ. ծառերը շարունակ պտուղ են տալիս, մշտապես իրեն-իրեն հասկավորվում է բրինձը...

Նոկ-Ֆանը մնաց ստորերկրյա թագավորությունում։ Նա ամուսնացավ թիթեռ աղջկա հետ։ Նրանց կյանքն ընթանում էր խաղաղ ու անվրդով։ Նոկ-Ֆանը պառկում էր փափուկ խոտի վրա, լսում թռչունների երգը, նայում երկնքին։

Դժվար է ասել, թե այսպես որքան ապրեց Նոկ-Ֆանը։

Բայց ահա մի անգամ Նոկ-Ֆանն իր ձեռքը ծակում է փշով։ Նա ցավ է զգում և տեսնում իր արյան կաթիլը. իսկական, կարմիր, տաք արյան։ Եվ հանկարծ նրա միտքն է գալիս իրենց գյուղը, իր ծեր ծնողները, եղբայրները, քույրերը, ցցագերանների վրա սարքված խարխուլ տնակները։ Եվ նրա սիրտը ճմլվում է կարոտից։ Նա այլևս չէր կարող մնալ ստորերկրյա թագավորությունում և որոշեց, ինչ էլ որ լինի, վերադառնալ տուն։ Եվ նա ճանապարհ ընկավ։

Ահարկու լեռները փակում էին Նոկ-Ֆանի ճանապարհը, բայց նա համառությամբ առաջ էր գնում։

Եվ հանկարծ ստորերկրյա թագավորությունը

չքացավ, ու Նոկ-Ֆանը հայտնվեց այն քարանձավում, որտեղ առաջին անգամ տեսավ աղջկան։

Երկար ժամանակ գաղտագողի գնաց նա մթության մեջ։ Վերջապես լույս աշխարհ դուրս եկավ, զննեց չորս բոլորը ու վազեց հարազատ գյուղի ուղղությամբ։ Բայց շուրջն ամեն ինչ տարօրինակ էր ու օտար։ Բրնձե դաշտերի մոտ նոր տներ էին կանգնած։ Անծանոթ, տարօրինակ հագնված մարդիկ քշում էին գոմեշները. Նոկ-Ֆանը բարեկամաբար ողջունում էր նրանց, բայց բոլորը նայում էին նրան զարմանքով։

Նոկ-Ֆանը երկար շրջեց գյուղում փնտրելով իրենց տունը։ Տունը չկար։ Եվ միայն բանանի հսկայական ծառերն էին նրան աղոտ կերպով ինչ-որ բան հիշեցնում։ Նա հիշեց, որ հենց այդտեղ հոր հետ միասին տնկեց բանանները։ Ինչպե՞ս էր նա հորը մատուցում փոքրիկ տնկիները, ինչպե՞ս էր արմատները հողով ծածկում։ Մի՞թե այն ծառերն են այդպես աճել։ Նրանք հարյուրամյա հսկաների տեսք ունեին։

Բանանի ծառերի մոտ Նոկ-Ֆանը տեսավ մի երիտասարդ աղջկա ու հարցրեց նրան, թե արդյոք չի ճանաչում Նի ընտանիքին։ Աղջիկը պատասխանեց որ ինքն այդ ընտանիքից է։

Նոկ-Ֆանը բռնեց նրա ձեռքերից, աղերսելով գեթ մի բառ ասել իր ծնողների, եղբայրների ու քույրերի մասին։ Աղջիկը երկյուղով լսեց նրան։ Վերջապես նա պատասխանեց, որ նրանք բոլորն էլ վաղուց մեռել են... Նա նույնիսկ հիշեց Նոկ-Ֆանի անունը։ Այո, այո... իրեն պատմել են, որ մի ժամանակ վաղուց, շատ վաղուց մի այդպիսի պատանի է եղել։ Նա մոլորվել է քարանձավներում, և ոչ ոք չի կարողացել նույնիսկ նրա հետքը գտնել։

— Այդ ե՛ս եմ, այդ ե՛ս եմ,— բացականչեց Նոկ-Ֆանը։

Բայց աղջիկը դուրս պրծավ նրա ձեռքերից ու փախավ։

Այն ժամանակ Նոկ-Ֆանը հասկացավ, թե որքան մենակ է ինքը, հասկացավ, որ ինքն օտար է այստեղ։ Ու գլխիկոր գնաց, ուր աչքը կկտրեր։

Նոկ-Ֆանը կորցրել էր իր ժամանակը, այն թանկագին ժամանակը, որը ուրիշները օգտագործում են աշխատանքի ու պայքարի համար։

Նրա կյանքն անցել էր անօգուտ։

*Ռուս. թարգմ.* ԹԱՄԱՐ ԱՀԱՐՈՆՅԱՆ

---

## ԱՅՍՏԵՂԻՑ ԱՅՆՏԵՂԻՑ

* * *

*Երեք մարդ Նյու-Յորք են գալիս՝ իրենց արձակուրդն անցկացնելու: Նրանց սենյակը գտնվում էր մի մեծ հյուրանոցի 46-րդ հարկում: Մի օր երեքն էլ գնում են թատրոն և վերադառնում են շատ ուշ:*

*— Ներեք,— դիմում է նրանց հյուրանոցի աշխատողը,— բայց մեր վերելակները չեն աշխատում: Եթե չեք կարող ոտքով բարձրանալ, կարող եք քնել սպասարանում:*

*— Ոչ, ոչ,— ասացին երեք բարեկամները միաձայն,— ոտքով կբարձրանանք:*

*Իրենց գործը հեշտացնելու համար որոշեցին, որ բարձրանալիս մեկը կատակներ անի, մյուսը՝ երգի, երրորդն էլ հետաքրքիր բաներ պատմի: Այդպես էլ արեցին: Ահա և 35-րդ հարկը: Չնայած կատակներն ու երգերը բավական զվարճացնող էին, երեքն էլ սոսկալի հոգնել էին:*

*— Դե, Թոմ,— դիմեց նրանցից մեկը երրորդին,— հիմա քո հերթն է, պատմիր մի երկար, բայց տխուր վերջ ունեցող պատմություն:*

*— Կպատմեմ,— համաձայնեց Թոմը:— Թեև ամենևին էլ երկար չէ, բայց բավականին վշտալի է:*

*Մյուս երկուսը լարեցին ուշադրությունը:*

*— Մեր սենյակի բանալին թողել ենք սպասարանում:*



* * *

*Գնացքի խցիկներից մեկում նստել էին Նիքն ու իր հայրը: Նրանք գնում էին տատիկին տեսության: Նիքը ոչ մի րոպե տեղը հանգիստ չէր նստում. անընդհատ գլուխը պատուհանից դուրս էր հանում: Հայրն ասաց.*

# Միթե՞ թունավորվելը հաճելի զբաղմունք է...

**Բժշկի զրույցներից**

Մթնել էր: Ես պատշգամբում նստած գիրք էի կարդում: Մի պահ կտրվելով գրքից, պարտեզում, մթության մեջ երկու ստվեր նկատեցի: Ծխախոտի թույլ լույսն ինձ հնարավորություն տվեց ճանաչելու մեր բակի փոքրիկ բնակիչներին՝ Սուրենին ու Տիգրանին:

Ակամայից ծալեցի գիրքը և սկսեցի մտածել այդ երեխաների առողջության մասին: Որոշեցի խոսել տնային կառավարիչի հետ և բարձր դասարանի մի քանի աշակերտների օգնությամբ հավաքել նրանց, զրուցել ծխախոտի վնասների մասին: Սակայն միայն Տիգրանն ու Սուրենը չեն: Ծխող երեխաներ շատ կան, պետք է բոլորին էլ օգնել: Ահա թե ինչու որոշեցի գրել այս զրույցը:

Կան երեխաներ, որոնք կարծում են, թե ծխելը անվնաս ու թեթև զվարճություն է: Դա ճիշտ չէ: Դուք, երևի, լսել եք, որ ծխախոտն իր մեջ նիկոտին է պարունակում: Բայց շատերին, երևի, հայտնի չէ, թե ինչ է նիկոտինը, ինչպես է ազդում օրգանիզմի վրա: Մաքուր նիկոտինը չափազանց վտանգավոր է: Եթե ապակե ծողի ծայրին մի կաթիլ նիկոտին քսեք և մոտեցնեք աղավնու կտցին, նա կսատկի: Նիկոտինն ազդում է նաև մարդու բոլոր օրգանների, հատկապես նյարդային համակարգության վրա: Մեկ գլանակ ծխելու դեպքում օրգանիզմի մեջ է ներծծվում 1—2 միլիգրամ նիկոտին, այսինքն՝ մահ պատճառող



քանակի մոտավորապես մեկ քսաներորդական մասը: Այսպիսով, ծխախոտի մեկ տուփի, այսինքն՝ 25 գլանակի մեջ պարունակող նիկոտինը, եթե անսովոր օրգանիզմը միանգամից ընդունի, կարող է թունավորվել:

Նոր ծխել սկսողները նիկոտինի նկատմամբ ավելի զգայուն են: Նրանք ծխելուց թուլություն են զգում, ցավում է ստամոքսը, գլխապտույտներ են ունենում, հաճախ լուծ է ընկըսվում: Երկարատև ծխողների օրգանիզմն ընտելանում է նիկոտինին, նրանց օրգանիզմը թունավորվում է աստիճանաբար, դանդաղորեն: Երկարատև ծխողների սիրտը մեկ րոպեում 12 կծկում ավելի է կատարում, իսկ մեկ օրվա ընթացքում այդ ավելորդ կծկումների թիվը հասնում է 1500-ի: Պարզ է, որ արագ աշխատող սիրտն ավելի շուտ է հոգնում և հետագայում ավելի վաղաժամ է շարքից դուրս գալիս:

Ձեզանից ոմանք, երևի, լսել

---

— Խելոք մնա, Նիք, հերիք է գլուխդ հանես պատուհանից:

Բայց Նիքը լսել անգամ չէր ուզում:

Այդ ժամանակ բարկացած հայրը վերցրեց Նիքի գլխարկը, թաքցրեց և ասաց.

— Տեսա՞ր, գլխարկդ թռավ պատուհանից:

Նիքն սկսեց լաց լինել:

— Դե լավ, հանգստացիր,— ասաց հայրը, — սուլիր, գուցե վերադառնա:

Նիքը մոտեցավ պատուհանին ու սկսեց սուլել: Հայրը գլխարկը ծածուկ դրեց նրա գլխին: Նիքը շատ ուրախացավ, որ գլխարկը նորից ետ եկավ:

Հաջորդ րոպեին նա հոր գլխարկը վերցրեց գլխից և պատուհանից դուրս շպրտեց.

— Դե, հայրիկ, հիմա քո հերթն է, սուլիր:

* * *

Հայրը գրասեղանի մոտ նստած՝ կատարում էր երկրորդ դասարանցի որդու տնային աշխատանքը: Իսկ տղան մի կողմ կանգնած՝ փուչիկից օճառի պղպջակներ էր թողնում: Հանկարծ նա ընդհատեց գործը և ասաց հորը.

— Է՜, հայրիկ, եթե մի հասարակ խնդիր լուծելու համար այդպես չարչարվում ես, ի՞նչ ես անելու, երբ ես 6-րդ դասարան հասնեմ:

* * *

— Էհ դու, հայրդ կոշկակար է, իսկ դու կոշիկ չունես:

— Հետո ինչ, քո հայրն էլ ատամնաբույժ է, իսկ քո փոքր եղբայրը ոչ մի ատամ չունի:

են կաթվածահարության պատճառ հանդիսացող արտերիոսկլերոզ հիվանդության մասին, որը կախված է արյան անոթների կարծրացման հետ: Պարզվում է, որ այդ հիվանդների մեծ մասը երկարատև ծխողներ են: Ծխողների թոքերը, շարունակ ծուխ շնչելուց սևանում են այնպես, ինչպես ծխնելույզի ներսի պատերը:

Ծխելը առանձնապես վնասում է անչափահասներին: Նրանք դանդաղ են աճում, թուլակազմ են լինում և մեծ մասամբ տառապում են արյան պակասությամբ: Գիտնականները ստուգել են 100 ծխող երեխաների առողջությունը: Պարզվել է, որ նրանցից 71-ը չափազանց աննորմալ են աճում, 84-ի մոտ նկատվել են շնչառական օրգանների հիվանդություններ: Նրանք բոլորն էլ եղել են նիհար, ծույլ և անտարբեր, հատկապես մտավոր աշխատանքի նկատմամբ:

Այս բոլորից հետո ես ուզում եմ հարցնել ձեզ, սեփական օրգանիզմը թունավորելը մի՞թե հերոսություն է:

## ԱՐԱՄԸ ՆՈՐԻՑ ՀԻՎԱՆԴ Է

Արդեն մի քանի օր է, որ նա դպրոց չի գնում: Եվ այդ առաջին անգամը չէ, որ նա հիվանդանում է: Ծնողների լավ խնամքը, ուժեղ սնունդը Արամին չեն օգնում:

— Տղաս շատ թույլ է, գունատ,— գանգատվում է մայրիկը:

Նրան ոչ մի ֆիզիկական աշխատանք չեն հանձնարարում: Իսկ նրա ընկերները, ընդհակառակը, ջուր են բերում, փայտ կոտրում, օգնում ծնողներին, հարևաններին: Ճաշից հետո ամեն օր նրանք բակում զանազան խաղեր են կազմակերպում: Արամը մի երկու անգամ փորձել է մասնակցել խաղերին, բայց շուտ հոգնել է, քրտնել ու հիվանդացել: Երբ եղանակը մի փոքր ցրտում է, Արամը իսկույն վազում է տուն: Նա նախանձով է նայում ընկերներին: Որտեղի՞ց է նրանց այդքան շատ ուժը: Իսկ ինքը թույլ է: Եվ նրան թվում է, թե այդտեղ ինչ-որ «գաղտնիք» կա:

Սակայն դրանում ոչ մի գաղտնիք չկա: Արամը ֆիզկուլտուրայով ու ֆիզիկական աշխատանքով բոլորովին չի զբաղվում: Նա քիչ է լինում մաքուր օդում, չի կոփում մարմինը: Եթե նա այդպես շարունակի, ամբողջ կյանքում ինքն իրենից դժգոհ կմնա: Բայց Արամը դեռևս փոքր է, 12 տարեկան: Ինչ խոսք, որ նա կզգա իր սխալը և հենց այսօրվանից կաշխատի այն ուղղել:

Ֆիզկուլտուրան և ֆիզիկական աշխատանքը կոփում են մարդու օրգանիզմը և նորմալացնում արյան շրջանառությունը: Այն օրգանները, որոնցում արյան շրջանառությունը դանդաղ է կատարվում, նորմալ կերպով չեն զարգանում: Արյան նորմալ շրջանառությունը հատկապես կարևոր է երեխայի օրգանիզմի համար: Ֆիզիկական աշխատանքով չզբաղվող երեխայի օրգանիզմի մկանային սիստեմը չափազանց վատ է զարգանում: Այդ պատճառով երեխան լինում է թույլ ու թմրած: Այդպիսի օրգանիզմը քիչ քանակով է թթվածին ու սննդամթերք ծախսում: Իսկ դա անդրադառնում է սրտի, թոքերի և ուղեղի աշխատանքի վրա:

Ֆիզիկական աշխատանքն ամրապնդում է նաև մարդու նյարդային համակարգը, որ ցրտի և շոգի դեմ օրգանիզմի պաշտպանողական միջոցների կենտրոնն է:

Ֆիզկուլտուրայով ու ֆիզիկական աշխատանքով պետք է զբաղվել մինչև խոր ծերություն: Դրանք մարդուն դարձնում են առույգ, կենսուրախ և աշխատունակ:

Դոցենտ Ա. ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

## ՇԱՏԱԽՈՍԸ

ՀԵՆՐԻԿ ԱՐԹԵՆՅԱՆ



Պատեֆո՞ն է, նա լարած,
Թե՞ կենդանի արարած.
Ձայնասփյուռ է կենդանի,
Իսկ անջատի՞չ... չէ՛, չունի...

Այս տեսակ էլ բարբաջո՞ս,
Անունն ի՞նչ է. Փչան-Սոս:



Անա բռնել Մինասին
Ու խոսում է իր մասին.

Խոսքի հեղեղ է, հորձանք,
Պատասխանողին մեծ փորձանք:
Փախիր, փախիր, ա՛յ Բարդուղ,
Որ չկպնես դու հարբուխ...

# ԴԱՇՏԻ ՄՈՒԿԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՄԱՐՏ
(Իրանահայ գրող)

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Դաշտի մուկը վեր կացավ,
Անցավ գետ ու լեռ ու ձոր,
Մտավ քաղաք ու դարձավ
Հյուր իր անգին սանամոր։

Վաղուց երկու ազգակից
Չէին տեսնվել իրար հետ,
Չէ՞ որ նրանց իրարից
Բաժանում էր սար ու գետ։

Սանամերը երբ տեսավ
Ազգականին հեռավոր,
Վզովն ընկավ, լաց եղավ
Եվ ընդունեց փառավոր։

Պատվեց ինչպես որ պետք էր
Հազար տեսակ բարիքով,
Չէ՞ որ մառանը լիքն էր
Ընկույզ, սեր ու կարագով։

Ու մեծ խնջույք նա սարքեց
Աղա քավորի պատվին,
Դրկիցներին հավաքեց,
Քեֆ արին ու ծափ տվին։

Թամադան էլ ինքն էր,
Սանամերը տըրըզան։
Նրա խոսքը վերջ չուներ,
Գովասանքներ զանազան...

Հարստությունը բոլոր
Ցույց էր տալիս իր հյուրին,
Ոնց է ապրում փառավոր,
Էս քաղաքում հեշտ, դյուրին։

Ինչե՜ր ասես չունի նա,
Ամբարները լեփ-լեցուն,
Ու աչքը կուշտ և երբեք
Չի նախանձում դրացուն։

Հազար ծառա, հազար մարդ
Աշխատում են իր համար,
Ինքը ուրախ ու զվարթ
Քեֆ է անում անդադար։

Եվ քավորին սրտակից
Խորհուրդ տվեց՝ ողջ տնով
Քաղաք քոչի նա դաշտից,
Ապրի իր մոտ ապահով։



— Ի՞նչ կա էդ դաշտ-չոլերում,
Ամայություն ու զրկանք...
Էլ ինչո՞ւ ես մոլորվում,
Եկ, երջանիկ կդառնանք։

Ասում էր ու աղաչում՝
Ականջ դնի լսածին,
Դրկիցներին է կանչում՝
Վկայեն իր ասածին։

Ու դեռ խոսում էր տաք-տաք
Սանամերը մեր փքված,
Երբ ներս մտավ ոնց կրակ
Պահակ մուկը մոլորված։

Լեղապատառ, դողալով,
Գույնը գցած ու անքուն,
Քրտինքի մեջ լողալով,
Ճչաց. Կատո՜ւն, չար կատո՜ւն...

Քեֆը վշտի փոխվեց ողջ,
Իրարանցո՜ւմ, լաց ու կո՜ծ,
Եվ խառնվեց քեֆն ամբողջ
Մառան, պանիր, չամիչ, մուկ...

Ու սրտաճաք բոլորը,
Փախան մտան մի-մի ծակ,
Որդին կորցրեց իր հորը,
Մայրը մնաց առանց ձագ...

Դաշտի մուկն էլ նրանց պես,
Իր գլուխը կորցրած,
Սաստիկ վախից դարձավ կես,
Սիրտը անչափ փշրված։

Հազար ծակ ու ճամփեքով
Մահվան ճեռից ազատվեց,
Որ հասավ տուն, բնի քով
Իր Մայր հողը համբուրեց։

— Լավ է, ասաց, ես անվախ
Էստեղ ապրեմ միշտ ազատ,
Ուտեմ ցորեն ու գարի
Իմ երկրում հարազատ,

Քանց քաղաքում մի օտար
Լինեմ յուղ ու մեղրի մեջ,
Որ սարսափը անդադար
Մաշի իմ կյանքը անվերջ...



Բաժինը վարում է պրոֆ. Գիտունյանը

## ԲԻՆԴԻԲՈՒ

...Մարդաբանական էքսպեդիցիան անցնում էր Ավստրալիայի ավազոտ անապատներով: Մակկալինը մնացել էր հյուսիսում: Խմելու ջրի պաշարը վերջանալու վրա էր: Եվ հանկարծ արշավախմբի անդամներից մեկը հեռվում ծխի մի բարակ սյուն նկատեց: Խարույկ: Մարդի՞կ: Բայց չէ՞ որ բնիկների ոչ մի ցեղի այդտեղ դեռ ոչ ոք չի հանդիպել:

Շուտով արշավախումբը մոտեցավ մի խոր կիրճի, որի միջով բարակ առվակ էր հոսում: Առվակի ափին ցեմնափոր անակներ կային, որոնց առաջ մխմխում էին վառված փայտերը: Բայց խարույկ վառողները չէին երևում:

Մթնշաղը թանձրացավ, և հանկարծ խավարի միջից դուրս թափվեցին մերկ մարդիկ ու մոտեցան ջրին:

...Այսպիսով անցած տարվա վերջերին հայտնաբերվեց ավստրալիական բնիկների բինդիբու ցեղը, որն անհայտ էր գիտությանը: Էքսպեդիցիան Մելբուռնի համալսարանի գիտնական Դոնալդա Թոմսոնի ղեկավարությամբ չորս ամիս անցկացրեց այն մարդկանց շրջանում, որոնք դեռ երբեք սպիտակ մարդ չէին տեսել:

Բինդիբու ցեղը բաղկացած է 40 մարդուց: Նրանց գյուղը կոչվում է Լարի-Լարի: Բինդիբուները ապրում են ընտանիքներով: Աշխատանքի գործիքները պատրաստում են քարից ու փայտից, ինչպես դա «վայել է» քարե դարի մարդկանց: Նրանք գլխավորապես սնվում են բուսականությամբ, բայց երբ սկսվում են անձրևները և անապատները վերածվում են կարմիր ճահճի, բինդիբուները ուտում են ջայլամի, կենգուրուի, կրիայի և մանր թռչունների միս:

Նրանց լեզուն նման չէ մինչ այժմ հայտնի որևէ լեզվի: Այժմ գիտնականները ուսումնասիրում են այդ նոր ցեղի սովորույթները և նիստուկացը:

Հիվանդ բույսը նույնպես ջերմում է: Այդպիսի բույսի ջերմությունն ավելի բարձր է, քան միևնույն պայմաններում գտնվող նույն տեսակի առողջ բույսինը: Հիվանդ բույսի շնչառությունն ավելի արագ է:






Ուինչելսիի համայնքը (Անգլիա) արդեն վեց հարյուր տարի է, ինչ Լա-Մանշի ափին պահում է հատուկ պահակ, որի պարտականությունն է՝ նստել ու նայել ծովի կողմը: Այդ պաշտոնը հաստատվել է 1380 թվականին, այն բանից հետո, երբ անգլիական ափին ոտք դրած ֆրանսիացիները ավերեցին Ուինչելսին: Այն ժամանակ էլ պահակին նշանակվեց շաբաթական հինգ ու կես պենս ռոճիկ, որը մինչև օրս էլ մնացել է անփոփոխ:

Այժմյան պահակը, որի անունը Ֆրեդ Քուրդ է, վերջերս պահանջեց ավելացնել իր ռոճիկը, ինչպես նաև դիմեց քաղաքագլխին՝ խնդրելով իր համար գնեն հեռադիտակ, քանի որ իր միակ աչքով նա չի կարող լավ տեսնել: Քաղաքագլուխը նրա դիմումի վրա մակագրեց. «Մերժել: Մեր ժամանակներս ֆրանսիացիների կողմից հարձակում չի սպասվում»:

## ԿԱՆԱՉ ՄԱԶ




Նորվեգիայի մայրաքաղաք Օսլոյի լողավազանի մոտ կա նախազգուշացնող մի ցուցանակ. «Ջրավազանում սուզվողը ջրից դուրս կգա կանաչ մազերով»: Եվ իրոք. հաճախ է պատահել, որ Օսլոյի ջրավազանից մարդիկ դուրս են եկել կանաչ մազերով: Պատճառն այն է, որ ջրի մեջ մեծ քանակությամբ քլոր կա:

ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ

## ՀՈՒՍԱԼԻ ԶԵՆՔ

Վերջերս ամերիկյան ծովափնյա Մայամի քաղաքում ինժեներները փորձարկել են շնաձկներին վախեցնող մի հարմարանք: Մեկ կիլոգրամից ոչ ավել ծանրություն ունեցող այդ սարքը, որն էլեկտրամագնիսական ալիքների գեներատոր է, լողորդը կապում է իր գոտուց: Հաստատված է, որ գիշատիչները 25 մետրից ավելի չեն կարողանում մոտենալ մարդուն:






Դուք, իհարկե, լսել եք ֆրանսիական թագավոր Պիպին Կարճահասակի մասին: Նրա բարձրությունը մեկ մետր 37 սմ էր: Սակայն դա չէր խանգարում, որ մարտերի ժամանակ նա գերազանց կերպով օգտվեր իր սրից: Պիպինի սրի երկարությունը մեկ մետր 80 սմ էր:

Վերջերս դոկտոր Լասլո Վերտեսը Հունգարիայում պեղել է հնագույն մարդու մի բնակավայր, որը գոյություն է ունեցել մոտավորապես 400 հազար տարի սրանից առաջ: Հայտնաբերվել են քարե գործիքներ, անտիկ աշխարհի կենդանիների մնացորդներ և խարույկ: Նախնական տվյալներով այդ խարույկը ամենահնագույնն է մինչ այժմ հայտնի եղածների մեջ:

## ԱՐՅԱ՛Ն ԳՈՒՅՆԵՐԸ

Կենդանիների մեծամասնության արյունը կարմիր է: Բայց ոչ բոլորինը: Կան ծովային որդերի այնպիսի տեսակներ, որոնց արյունը կանաչ է, իսկ խեցգետինների, սարդերի, կարիճների, խխունջների, ութոտնուկների և թանաքաձկների արյունը կապույտ է: Իսկ ինչի՞ց է կախված արյան գույնը:

Արյան կարմիր գնդիկների՝ հեմոգլոբինների, կազմում կա երկաթ: Նրա օքսիդացումից էլ կախված է արյան գույնը:

Այն կենդանիները, որոնց արյան մեջ հեմոգլոբինի փոխարեն կա քլորակրուորին, որը պարունակում է երկաթի ենթօքսիդ, ունեն կանաչ արյուն: Իսկ եթե հեմոգլոբինի փոխարեն կա հեմոցիանին, որը պարունակում է պղինձ, արյունը կապույտ գույն ունի:



Նյու-Յորքից ինքնաթիռով Փարիզ փոխադրեցին մեղուների մի մեծ պարս: Փարիզում մեղուներին հյուրասիրում էին սիրոպով, որը տալիս էին ամեն օր երեկոյան, միևնույն ժամին: Մեղուները ժամացույցի մեխանիզմի ճշտությամբ միշտ նույն պահին էին թռչում գալիս «ընթրիքի»:

Մի անգամ, հերթական «ընթրիքից» հետո մեղուներին նորից տեղավորեցին մութ ու խուլ մի արկղի մեջ և ինքնաթիռով վերադարձրին Նյու-Յորք: Այստեղ նրանց համար ստեղծեցին նույնպիսի պայմաններ: Թռիչքը տևել էր 19 ժամ, իսկ Նյու-Յորքի և Փարիզի ժամանակների տարբերությունը կազմում է վեց ժամ: Այսպիսով, մեղուները Նյու-Յորք հասան հետևյալ օրվա «ընթրիքից» շատ առաջ: Եվ ի՞նչ: Նրանք կերակրամանների մոտ թռան Փարիզի ժամանակով:

Նշանակում է մեղուները ժամանակը «որոշում» են արհամարհելով սովորույթ դարձած այնպիսի կողմնորոշումներ, ինչպիսիք են արևն ու աստղերը: Գուցե նրանք ղեկավարվում են տիեզերական այն ճառագայթումների պարբերական ներգործությամբ, որոնք «գաղտնի գործակալների» միջոցով մեղուներին իմաց են տալիս հյուրասիրության ժամանակը:






Հյուսիսային Ամերիկայի հարավ-արևմտյան անապատներում ապրում է մի զարմանալի գազանիկ՝ քարասկյուռ: Այդ շատ արագաշարժ և աշխույժ կենդանին կարող է ջուր չխմել նույնիսկ ...100 օր:

Ամերիկյան գիտնականներից մեկը կատարել է մի հետաքրքիր փորձ: Մի քանի պինգվին բերելով Անտարկտիդայից, նրանց հասցրել է մայր ցամաքի խորքը և ազատ արձակել: Պինգվինները ուղիղ գծով դանդաղ շարժվել են դեպի ափ: Ենթադրվում է, որ նրանք կողմնորոշվում են արևով՝ օգտագործելով իրենց ստվերը:

ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ



# ԱՄԵՆ ՄԵԿԸ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԻՐ ՄԻՋՈՑՆ ՈՒՆԻ

Ամեն մի կենդանի արարած, լինի դա գազան, կենդանի, թռչուն, միջատ կամ սողուն ունի իր պաշտպանական միջոցը: Օրինակ, եղջերուների, այծերի, կովերի, յակերի, բիզոնների համար պաշտպանական միջոց ծառայում են եղջյուրները: Նույնիսկ երբեմն իր համար ոչ բարենպաստ պայմաններում այդ եղջյուրներից վախենում է ամենաուժեղ, ամենավայրագ ու ամենաճարպիկ գազանը՝ վագրը: Իսկ ո՞վ չի վախենում արջի ամեհի ուժից կամ առյուծի, վագրի, որսկան շան, հովազի, լուսանի ու նրանց նմանների մագիլներից: Ու՞մ չեն սարսափեցնի գայլի ժանիք-ատամները: Իսկ աղվեսը, թեև օժտված չէ ոչ ուժով, ոչ մագիլներով, ոչ ժանիք-ատամներով և ոչ էլ եղջյուրներով,



Սկունս

բայց դրա փոխարեն խորամանկ է, և այդ խորամանկությունը նրա պաշտպանական ամենալավ միջոցն է: Ձիերի, էշերի եղնիկների, զեբրերի, ործղեղնների պաշտպանական միջոցը նրանց սմբակներն են: Սմբակի հարվածով որմզդեղնը կարող է սպանել ուժեղ գազանի: Նապաստակին հետապնդումից փրկում են արագավազ ոտքերը, ոզնուն՝ սրածայր փշերը. ապա մի փորձի՛ր ձեռք տալ նրան...

Կան այնպիսի կենդանի արարածներ, որոնց համար իբրև պաշտպանական միջոց ծառայում է գույնը. նրանք հարմարվում են այնպիսի տեղանքի, որի գույնը միաձուլվում է իրենցի հետ, ու դառնում են բոլորովին աննկատելի: Մարդ կարող է անցնել եղեգների մեջ կանգնած մեծ թռչունի կամ ծաղկին նստած թիթեռի կողքով ու չնկատել նրանց: Իսկ օձի մաշկը որքա՜ն շատ է հիշեցնում ծառի կեղևի...

Կա մի զարշահոտ փորսուղ՝ ժանտաքիսների ընտանիքից: Դա արտաքնապես միանգամայն անզոր մի արարած է և կոչվում է սկունս: Այս փոքրիկ գազանիկը օժտված է ամենաահեղ պաշտպանական միջոցով. նկատելով մոտեցող թշնամուն, նա ետ է շրջվում ու իր հետապնդողի վրա արձակում խիստ զարշահոտ մի հեղուկ: Եթե այն թափվի մարդու վրա, ապա նա պետք է առանձնանա, որովհետև այդ հոտը ոչ մի բանով դուրս չի գալիս:

Սկունսները սիրում են սողոսկել կտորեղենների պահեստները և իրենց զարշահոտ հեղուկն արտաթորել կտորեղենի վրա, ու ստիպված թանկարժեք կտորեղենը ծով են լցնում, որպեսզի ազատվեն անտանելի հոտից:

# ՁԵՌՆԱՍՈՒՆ ԳԱԶԱՆՆԵՐ

Մարդիկ գայլին համարում են ամենավայրագ գազանը: Իրոք, եթե քաղցած գայլի ճանկըն ընկնես, իսկույն կպատառոտի: Իսկապես, գայլը չար է



Ցիվետա

ու կատաղի, հատկապես քաղցած ժամանակ: Եթե գայլին ընտելացնես ամենավաղ հասակից և լավ կերակրես, ապա նա իր տիրոջ հետ կկապվի հավատարիմ շան նման: Մանավանդ որ ընտելացած գայլերը շատ վախկոտ են լինում:

Որսորդներից մեկն ունեցել է մի ձեռնասուն գայլ, որը վախեցել է ոչ միայն շներից, այլև նույնիսկ կատուներից, հավերից ու հատկապես աքաղաղներից:

Ընտելացնել կարելի է ամեն մի գազանի: Մոսկվայի կենդանաբանական այգու մատղաշի բաժանմունքի վարիչ Վերա Չապլինան առյուծի նորածին ձագին, որին մայրը լքած է եղել, տարել է տուն և պահել ընդհանուր բնակարանում: Կորյունը, որին կոչել են Կինուլի, երկու տարի ապրել է այդ բնակարանում, երեխաների հետ պահմտոցի, բռնոցի խաղացել ու մենակ մնալիս շատ է տխրել:

Վերա Չապլինան ընտելացրել էր նաև բորենուն, որի հետ

ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ

հաճախ զբոսնում էր կենդանաբանական այգում: Հենց այնտեղ՝ կենդանաբանական այգում, նա ուներ մի ծեռնասուն որմզդեղնի ծագ, որը եռանդագին պաշտպան էր կանգնում իր դաստիրակչուհուն:

Մարդու հետ մտերմանում են նույնիսկ վագրերը: Ամերիկայում շատերը տներում պահում են ծեռնասուն կուգուարներ, կամ կատվառյուծներ. դրանք նման են առյուծի, միայն առանց բաշի են ու ավելի փոքր գլխով:

Շատ շուտ ընտելանում են գեպարդները: Այդ հետաքրքրական գազանը նույնպես կատվազգի է, բայց ունի և շան նմանություն: Գեպարդը ընձառյուծի մեծության է, նրա գլուխը հիշեցնում է կատվի, իրանը և թաթերը՝ շան:

Գեպարդը կարո՞ղ է ընտելացվել նույնիսկ երկու ժամում: Բոլորին հայտնի է, որ երբ կատուն լավ տրամադրության մեջ է, ապա մլավում է: Իսկ գեպարդը մլավում է մշտապես, ամբողջ օրը: Եթե ականջ դնես, գեպարդը մլավում է նույնիսկ կենդանաբանական այգում, վանդակի մեջ:

Գեպարդը շատ ամուր է կապվում տիրոջ հետ, պաշտպանում է նրա տունը, հետևում ընտանի կենդանիներին, տիրոջ հետ որսի է գնում:

Աֆրիկայում և Հարավային Ասիայում բնակվում է մշկակատուների ընտանիքին պատկանող գիշերային մի փոքրիկ գազան, որը կոչվում է ցիվետա: Դա նման է կատվի, բայց ավելի սուր դնչով, փափկամազ պոչով և չունի մերկ ներբանավոր թաթեր՝ ինչպես կատուները:

Ժուռնալիստներից մեկը պատմում էր, որ Աֆրիկայում, ուր ինքը մեկնել էր զբոսաշրջիկների խմբի հետ, նրան նվիրել են մի ցիվետա, որը շատ շուտ ընտելացել է իր նոր տիրոջը և օրերով ծեռքից չի իջել:

Մարդիկ ցիվետային ընտելացնում են ու պահում բնակարաններում նաև այն պատճառով, որ այդ փաղաքուշ գազանիկը արտաթորում է շատ հաճելի հոտով մի հեղուկ՝ ցիբետ...

Ինչպես հայտնի է, ամենալավ օծանելիքները պատրաստում են մուշկից: Մուշկը դա սուր հոտով օժտված մի նյութ է, որն հայթայթվում է մշկայծյամի և վիխուխուլի գեղձերից: Շատ հետաքրքրական է ու զարմանալի, որ այդ երկու միանգամայն տարբեր կենդանիները արտաթորում են միատեսակ հեղուկ: Մշկայծյամը որոճող կենդանի է, անեղջյուր եղնիկների ընտանիքից, իսկ վիխուխուլը՝ կրծող է, առնետի նման, բայց փոքր-ինչ մեծ չափի:

Մշկայծյամի և վիխուխուլի մուշկից պատրաստված օծանելիքներն ստացվում են մանրակրկիտ մշակումից հետո, այն ժամանակ, երբ ցիվետայի հեղուկը՝ ցիբետը, որ գտնվում է նրա փորի մեջ փոքրիկ պարկում, արդեն պատրաստի նյութ է ու ոչ մի մշակման կարիք չի զգում:

Իհարկե, շատ հաճելի է տանը ունենալ և փաղաքուշ և բուրումնավետ կենդանի, բայց դժբախտաբար այդ հրաշալի կենդանին . կարող է ապրել միայն իր հայրենիքում:

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ



# ՍՊՈՐՏԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Դարերի խորքից եկած արվեստի որոշ հուշարձաններ պատմում են դահուկների, ֆուտբոլի և խոտի հոկկեյի ծագման մասին:

Զալավրուգայի և Բեսովի Սլեդկի շրջաններում (Կարելական ԱՍՍՌ) 20—30-ական թվականներին սովետական հնագետները ժայռերի վրա հիանալի վիմանկարներ հայտնաբերեցին, որոնք վերաբերում են մ. թ. ա. 3—2-րդ դարերին: Դրանք հիմնականում պատկերում են դահուկորդներին՝ որսի, զբոսանքի ժամանակ և կամ այլացեղերի հարձակումները ննջելիս: Կարճ դահուկներով, մեկ ձողափայտով, որոնք չեն խանգարում հետամտության ժամանակ, ահա թե ինչպես են հնադարյան նկարիչները պատկերել առաջին դահուկորդներին:

Ինչ վերաբերում է ֆուտբոլին, ապա նրա ծննդավայրը համարվում է Անգլիան: Խաղի այժմյան անունը ֆուտբոլ, որ նշանակում

*դեպի Նորաշեն—Նախիջևան: Նախիջևանից ավտոբուսը կըտրում—անցնում է արևակեզ, անջուր ճանապարհներ: Հարավի արևի տաք օդը դառնում է հեղձուցիչ. դժվարանում ես շնչել: Հեռվում երևում են բամբակի դաշտեր ու խաղողի այգիներ, գորշ, շիկավուն հողաշեն տներ:*

*Բայց ահա Սիսիանի լեռնանցքը: Ավտոմեքենան ըսկըսում է անընդհատ բարձրանալ, օդը դառնում է սուր, զովաշունչ, շնչում ես լիաթոք: Փոքրիկ ծառուտում կարկաչում է աղբյուրը, որի մոտ հանգստանում են ճանապարհորդները: Այնուհետև անցնում ենք փոքր լճակների ու գետակների կողքով: Ամենուրեք կանաչ տարածություն է: Սիսիանի լեռնանցքի ամենաբարձր գագաթից երևում են Զանգեզուրի չքնաղագեղ անտառները, ալպյան արոտավայրերն ու հեռուներում անհետացող ուղիները:*

*ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

## ՋՐԻՑ... ՈՍԿԻ




Կարելի՞ է արդյոք օվկիանոսային ջրերից ըստանալ ոսկի: Այս առեղծվածը վաղուց հուզել է գիտնականներին: Սակայն այն բազմաթիվ փորձերը, որ նպատակ են ունեցել ստանալ թանկարժեք մետաղներ, որոնցով հարուստ են ծովերի և օվկիանոսների ջրերը, մինչև հիմա վերջացել են անհաջողությամբ: Բայց վերջերս քիմիկոս Ի. Բաուերը ստեղծել է մի այնպիսի նյութ, որն ընդունակ է ջրից ոսկի հավաքել. 100 լիտր օվկիանոսային ջրից ստանալ 1,4 միլիոներորդական գրամ ոսկի:

Այժմ Ջոնատ Բաուերը նախապատրաստվում է ավելի մեծ բնույթի փորձեր կատարել օվկիանոսային ջրերում:

Մեր Երկիրը «պոչավոր» մոլորակ է: Բազմաթիվ տվյալներ ասում են այն մասին, որ Երկիրը և արեգակնային համակարգության այլ մոլորակներ ունեն յուրահատուկ փոշուց բաղկացած «պոչեր»: Սովետական գիտնական Վ. Գ. Ֆեսենկովի կարծիքով Երկրի «պոչը» առաջ է եկել միջմոլորակային փոշիների այն մասնիկներից, որոնք Երկրի ձգողականության հետևանքով փոշու ամպ են գոյացնում:

Վերջերս սովետական աստղագետ Վ. Ի. Մորովը բազմաթիվ դիտումների հիման վրա եկել է այն եզրակացության, որ այդպիսի ամպ իրոք գոյություն ունի: Բայց խորհրդավոր ամպի էությունը դեռևս գաղտնիք է մնում աստղագետների համար:

Դաղստանի հարավային և հյուսիսային լեռների քարքարոտ լանջերին աճում են ոչ մեծ թփուտներ, որ ասես փշոտ բարձեր լինեն: Դրանցից կան նաև Հայաստանում, որին մեր ժողովուրդն ասում է գազ: Եթե տակից կտրես նրա ճյուղերից մեկը, իսկույն կծորա թանկարժեք հեղուկը՝ խեժը:

Գազի խեժի բուժիչ հատկությունների մասին տեղացիներն իմացել են շատ վաղուց: Այդ խեժի օգնությամբ նրանք բուժել են ատամի անտանելի ցավերը, ապաքինել բաց վերքերը: Մեր ժամանակներում այդ խեժը լայնորեն օգտագործվում է հրուշակեղենի, տեքստիլ և պարֆյումերային արդյունաբերության մեջ: Մեր բուսաբաններն ապացուցել են, որ հատուկ պլանտացիաներում աճեցնելու դեպքում այդ բույսերից կարելի է ստանալ տաս անգամ ավելի շատ խեժ, քան բնական պայմաններում:

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ՀՐԱՑԱՆԱՁԳՈՒԹՅՈՒՆ

Կրակոց, և հրապատիճը թռչելով տասնյակ մետր հեռու, խրվում է հողի մեջ: Նորից կրակոց, նորից ու նորից... Կես ժամ հետո անտառապահը դատարկելով ամբողջ փամփշտակալը, շտապում է գնդելու իր «ռազմադաշտը»: Ամեն բան կարգին է, հրապատիճները ծառերի սերմերի հետ թաղվել են հողի մեջ:



Մի քանի օրից հետո ծիլերը արևերես են դուրս գալիս, ստեղծելով նոր տնկիների մի ամբողջ պլանտացիա:

Կանադական անտառարդյունաբերության աշխատողները գտնում են, որ այդ մեթոդով մեծ տարածության վրա անտառ ստեղծելն ավելի արագ է կատարվում և ավելի հուսալի է:

դեպի Նորաշեն—Նախիջևան: Նախիջևանից ավտոբուսը կըտրում—անցնում է արևակեզ, անջուր ճանապարհներ: Հարավի արևի տաք օդը դառնում է հեղձուցիչ. դժվարանում ես շնչել: Հեռվում երևում են բամբակի դաշտեր ու խաղողի այգիներ, գորշ, շիկավուն հողաշեն տներ:

Բայց ահա Սիսիանի լեռնանցքը: Ավտոմեքենան ընկըսում է անընդհատ բարձրանալ, օդը դառնում է սուր, զովաշունչ, շնչում ես լիաթոք: Փոքրիկ ծառուտում կարկաչում է աղբյուրը, որի մոտ հանգստանում են ճանապարհորդները: Այնուհետև անցնում ենք փոքր լճակների ու գետակների կողքով: Ամենուրեք կանաչ տարածություն է: Սիսիանի լեռնանցքի ամենաբարձր գագաթից երևում են Զանգեզուրի չքնաղագեղ անտառները, ալպյան արոտավայրերն ու հեռուներում անհետացող ուղիները:

ԱԲՐԱՀԱՄ ԳՐԻԳՈՐՅԱՆ

## ՋՐԻՑ... ՈՍԿԻ




Կարելի՞ է արդյոք օվկիանոսային ջրերից ըստանալ ոսկի: Այս առեղծվածը վաղուց հուզել է գիտնականներին: Սակայն այն բազմաթիվ փորձերը, որ նպատակ են ունեցել ստանալ թանկարժեք մետաղներ, որոնցով հարուստ են ծովերի և օվկիանոսների ջրերը, մինչև հիմա վերջացել են անհաջողությամբ: Բայց վերջերս քիմիկոս Ի. Բաուերը ստեղծել է մի այնպիսի նյութ, որն ընդունակ է ջրից ոսկի հավաքել. 100 լիտր օվկիանոսային ջրից ստանալ 1,4 միլիոներորդական գրամ ոսկի:

Այժմ Էռնստ Բաուերը նախապատրաստվում է ավելի մեծ բնույթի փորձեր կատարել օվկիանոսային ջրերում:

Մեր Երկիրը «պոչավոր» մոլորակ է: Բազմաթիվ տվյալներ ասում են այն մասին, որ Երկիրը և արեգակնային համակարգության այլ մոլորակներ ունեն յուրահատուկ փոշուց բաղկացած «պոչեր»: Սովետական գիտնական Վ. Գ. Ֆեսենկովի կարծիքով Երկրի «պոչը» առաջ է եկել միջմոլորակային փոշիների այն մասնիկներից, որոնք Երկրի ձգողականության հետևանքով փոշու ամպ են գոյացնում:

Վերջերս սովետական աստղագետ Վ. Ի. Մորովը բազմաթիվ դիտումների հիման վրա եկել է այն եզրակացության, որ այդպիսի ամպ իրոք գոյություն ունի: Բայց խորհրդավոր ամպի էությունը դեռևս գաղտնիք է մնում աստղագետների համար:

Դաղստանի հարավային և հյուսիսային լեռների քարքարոտ լանջերին աճում են ոչ մեծ թփուտներ, որ ասես փշոտ բարձեր լինեն: Դրանցից կան նաև Հայաստանում, որին մեր ժողովուրդն ասում է գազ: Եթե տակից կտրես նրա ճյուղերից մեկը, իսկույն կծորա թանկարժեք հեղուկը՝ խեժը:

Գազի խեժի բուժիչ հատկությունների մասին տեղացիներն իմացել են շատ վաղուց: Այդ խեժի օգնությամբ նրանք բուժել են ատամի անտանելի ցավերը, ապաքինել բաց վերքերը: Մեր ժամանակներում այդ խեժը լայնորեն օգտագործվում է հրուշակեղենի, տեքստիլ և պարֆյումերային արդյունաբերության մեջ: Մեր բուսաբաններն ապացուցել են, որ հատուկ պլանտացիաններում աճեցնելու դեպքում այդ բույսերից կարելի է ստանալ տաս անգամ ավելի շատ խեժ, քան բնական պայմաններում:

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ՀՐԱՑԱՆԱՁԳՈՒԹՅՈՒՆ

Կրակոց, և հրապատիճը թռչելով տասնյակ մետր հեռու, խրվում է հողի մեջ: Նորից կրակոց, նորից ու նորից... Կես ժամ հետո անտառապահը դատարկելով ամբողջ փամփշտակալը, շտապում է զննելու իր «ռազմադաշտը»: Ամեն բան կարգին է, հրապատիճները ծառերի սերմերի հետ թաղվել են հողի մեջ:



Մի քանի օրից հետո ծիլերը արևերես են դուրս գալիս, ստեղծելով նոր տնկիների մի ամբողջ պլանտացիա:

Կանադական անտառարդյունաբերության աշխատողները գտնում են, որ այդ մեթոդով մեծ տարածության վրա անտառ ստեղծելն ավելի արագ է կատարվում և ավելի հուսալի է:

ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ ԵՐԲ ՈՐՏԵՂ ԻՆՉՈՒ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
Նկ. ԳՐԻԳՈՐ
ԽԱՆՋՅԱՆԻ



ճինյան մրցանակի լաուրեատ: 5. Քաղաք՝ Չինաստանում: 6. Սովետական նշանավոր մարտանկարիչ: 7. Ռուս նկարիչ, «Քրիստոսի հայտնությունը ժողովրդին» կտավի հեղինակը:

*Կազմեց՝ ԱԼԲԵՐՏ ՄԿՐՏՉՅԱՆ*

## ԽՈՉԲՈՌ ՎԵՑ ՏԱՌՈՎ

Սլաքներ ունեցող վանդակներից սկսած, ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ, ամեն մի թվանշանի շուրջը գրեք վեց տառից բաղկացած անուն:

1. Տ. Զուլֆուգարյանի կոմիկական օպերան: 2. Պետություն՝




Եվրոպայում: 3. Պատմական հածանավ: 4. Ֆրանսիական առաջադեմ գրող, միջազգային լե-

## ՎԻԿՏՈՐԻՆԱ

*— Քեռի Կարապետ, այդ ի՞նչ նստարան եք պատրաստել,— հարցրին երեխաները:*

*— Հապա մի շարք կանգնեք, հիմա կիմանաք:*

*Բակի երեխաները հրապարակի մի կողմում շարք կանգնեցին:*

*Քեռի Կարապետը հրապարակի մյուս կողմում դրեց իր պատրաստած նստարանը, որն ուներ 20 սմ բարձրություն, 30 սմ լայնություն, 3—4 մետր երկարություն:*

*— Սա մեր պայմանական կամուրջն է,— ասաց քեռի Կարապետը.— այժմ, երբ Գագիկը սկսի նվագել, դուք պետք է քայլեք և անցնեք կամուրջի վրայով: Այն պահին, երբ ընդհատվում է նվագը, կամուրջի վրա գտնվողները պարտավոր են պառկել:*

*Երեխաները ուրախացան, նը-*


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.:

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки. № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 10356 Պատվեր՝ 1667, Տպաքանակ՝ 13 400, Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 4/VII 1965 թ. ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:*

Գինը՝ 20 կ.:

րանցից մի քանիսը նույնիսկ թռչկոտեցին:

— Մի բան էլ լավ իմացեք,— շարունակեց Կարապետ քեռին,— ինչ մեղեդիներ որ կլսեք խաղի ու պարի ժամանակ, պետք է ասեք դրանց հեղինակների անունները: Տնային կառավարիչը գրքեր է ավել պարգևատրելու ճիշտ պատասխանողներին:

Խաղն սկսվեց: Ակորդեոնիստը իրար կապակցված ձևով նվագեց «Վարշավյանկա»,«Անվախ ընկեր»: Երեխաները խրոխտ քայլերով շարժվեցին և սկսեցին անցնել կամուրջի վրայով: Հանկարծ նվագըն ընդհատվեց: Անահիտն ու Գուրգենը մնացին կամուրջի վրա: Գագիկը նվագեց «Անուշ» օպերայի պարեղանակներից երկուսը, և Անահիտն ու Գուրգենն առանձին-առանձին պարեցին, իսկ մնացած երեխաները ծափ էին տալիս:

Նորից սկսվեց խաղը: Երեխաները քայլում էին ֆուտբոլիստների քայլերգի և «Թող լինի միշտ արևը» երգի հնչյունների տակ:

Ընդհատվեց նվագը: Երեք տղա մնացին կամուրջի վրա: Նրանք պարեցին «Ալմաստ» օպերայի տղամարդկանց պարը:

Վերջում սկսվեց վիկտորինան:

— «Անվախ ընկերը» երգի խոսքերն ու երաժշտությունը գրել է ռուս բանաստեղծ Ռադինը,— ասաց Սաթիկը և ստացավ առաջին նվերը:

Մյուս մեղեդիների հեղինակներն ովքե՞ր են, այդ էլ թողնում ենք, որ դուք մտածեք ու պատասխանեք:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՀԱՆԵԼՈՒԿ

Ունեմ և՛ թերթ,
Ե՛վ տող և՛ էջ,
Բայց երբ փոխեք
Իմ անվան մեջ
Միայն մի տառ,
Կամ մի հնչյուն,
Ես կդառնամ
Իսկույն թռչուն:

Ս. ԱՐՇԱԿՈՒՆԻ




Հարցական նշանը դրված է այն աշխարհագրական վայրի վրա, որը պահանջվում է գտնել և տեղադրել խաչբառի համապատասխան վանդակներում:

Կազմեց՝ ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

## ԽԱՉԲԱՌ ՉՈՐՍ ՏԱՌՈՎ

Այս խաչբառի պատասխանները լրացվում են համարից համար, հաջորդաբար:

1. Գազ: 2. Աշխարհահռչակ կին շախմատիստի անունը: 3. Թունավոր մետաղ: 4. Թխվածք: 5. Հերոս՝ Ալ. Դյումայի «Երեք հրացանակիրներ» վեպից: 6. Գործող անձ՝ Ալ. Շիրվանզադեի «Չար ոգի» դրամայից: 7. Հայկական օպերա: 8. Հայրենական պատերազմի հերոսուհի (անունը): 9. Արաքս գետի անունը ժողովրդական երգերում: 10. Հեռախոսականչ: 11. Հերոս՝ Ստ. Զորյանի «Պապ թագավոր» պատմավեպից: 12. Գետ՝ ՍՍՌՄ-ի եվրոպական մասում: 13. Ավտոմեքենայի կարևոր մաս:



Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## Պատասխանում ենք («ՊԻՈՆԵՐ» № 6)

1. Տյուսար: 2. Բյուրական: 3. Նադաշ: 4. Շերամ: 5. Մազազաթ: 6. Թագ: 7. Գոչ: 8. Շիրակացի: 9. Իսակով: 10. Վաղարշապատ: 11. Տզմուտ: 12. Տիգրանակերտ 13. Տարոն: 14. Նավասարդ: 15. Դավիթ: 16. Թոնդրակ: 17. Կարս: 18. Սասուն: 19. Ներսես: 20. Սպարապետ: 21. Տաճար: 22. Րաֆֆի: 23. Իսահակյան: 24. Նաիրի



# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ԾԱՂԻԿՆԵՐ

ՎԱՐԴԱՆՅԱՆ ԳՐԻԳՈՐ
(Սևանի շրջան, Ծովագյուղի դպրոցի 2-րդ դաս. աշ.)

Ձի

ԹԱԴԻՎՅԱՆ ՀԱՐՈՒԹԻԿ
(Կիրովական, 7 տարեկան)